Չորրորդ տարի

Բանվոր դասակարգի պայքարին-պիոնե՛ր պատրաստ.

# ՊԻՈՆԵՐ

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՈՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ

Խմբագրության հասցեն—Յերեվան, Աբովյան փ. № 36

№ 3—4 (7—8) ԱՊՐԻԼ—ՄԱՅԻՍ 1926 թ.

## ՀԱՄ. ԼԿՅԵՄ 7-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

*Պիոներները չեն կարող չհետաքրքրվել իրենց մեծ յեղբայրների կազմակերպության, Լենինյան Կոմյերիտմիության կյանքով ու աշխատանքներով։*

*Հազիվ թե գտնվի մի պիոներ, վոր լսած չլինի մարտ ամսում Մոսկվայում գումարված Համամիութենական Կոմյերիտմիության 7-րդ համագումարի մասին։*

*Համամիութենական համագումարը Խորհրդային յերկրների Կոմյերիտմիության բարձրագույն մարմինն է։ Նա ամեն տարի հավաքվում և ցույց է տալիս, թե ինչ աշխատանքներ պիտի կատարեն Կոմյերիտմիությունն ու Պիոներական կազմակերպությունը։*

*7-րդ համագումարը Ռուսաստանի Լենինյան Կոմյերիտմիությունը (ՌԿՅԵՄ) վերանվանեց* **Համամիութենական Լենինյան Կոմյերիտմիություն** *(Համ. ԼԿՅԵՄ)։ Այդ վերանվանումը մեծ նշանակություն ունի. դրանով ավելի-յե ամրապնդվում Կոմյերիտմիության դրոշակի տակ համախմբված բազմաթիվ ազգերի և ցեղերի աշխատավոր յերիտասարդության միջազգային կապը։*

*Աճել ու զարգացել է Համ. ԼԿՅԵՄ։ Նա իր 6-րդ համագումարին ուներ 762 հազար անդամ, իսկ 7-րդ համագումարին՝ մեկ միլիոն 750 հազար անդամ։ Այդ ժամանակաշրջանում մեծ չափով աճել են նաև պիոներական կազմակերպության շարքերը և 200 հազարից հասել մոտ յերկու միլիոնի։*

*Ահա 7-րդ համագումարը մտածեց հենց այն մասին, թե ինչպես անել, վոր այդ բազմահազար Կոմյերիտականներն ու պիոներները ավելի լավ դաստիարակվեն, ավելի յեռանդուն կերպով աշխատեն ու պայքարեն Լենինի ավանդների իրագործման համար։*



**Համ-ԼԿՅԵՄ Կենտկոմի գլխավոր քարտուղար ՉԱՊԼԻՆ**

*7-րդ համագումարը ասեց, վոր պիտի աշխուժացնել պիոներական կոլլեկտիվի աշխատանքները։ Պետք է խուսափել ձանձրալի զեկուցումներից և ավելի մեծ տեղ տալ եքսկուրսիաներին և զանազան զվարճալիքներին։*

*Հարկավոր է նաև, վոր պիոներները հիմիկվանից սովորեն զանազան գիտելիքներ (ելեկտրականության մասին, ռադիոյի մասին, գյուղատնտեսություն և այլն)։ Առանց դրան՝ նրանք ապագայում չեն կարող լավ աշխատող լինել, կուլտուրական գյուղացի լինել։*

*Բացի դրանից պիոներները չպետք է կտրվեն անկազմակերպ պատանիներից, այլ պետք է միշտ ծանոթանան նրանց կյանքին ու պահանջներին, ոգնեն նրանց և գրավեն պիոներական կազմակերպության մեջ։*

*7-րդ համագումարի բոլոր վորոշումներն այստեղ մեկ-առ-մեկ պատմել չի լինի։*

*Պետք է կոլլեկտիվներում այդ մասին մի փոքրիկ զրույց կազմակերպել, ճանապարհներ գտնել նրանց իրականացման համար։*

*Կոլլեկտիվ աշխատանքով, ձեռք-ձեռքի տված և իրար ոգնելով ԼԿՅԵՄ 7-րդ համագումարի բոլոր վորոշումներն իրագործելու համար միշտ պատրաստ։*

**Քարտուղարության անդամներ՝ ՄԱՏՎԵՅԵՎ, ՍՈԲՈԼԵՎ, ՄԻԼՉԱԿՈՎ, ԻՎԱՆՈՎ**




Հ. ՄԱՐԱՏ

### Աշխատավորության միջազգային համերաշխության տոնը

Վե՞ր պիոները չգիտե, թե ինչ որ է Մայիսի մեկը: Ամեն տարի պիոներները տոնում են այդ որը. տոնում են իրենց ծնողների հետ, ամբողջ աշխատավորների հետ միասին:

Հիմա խորհրդային յերկրի աշխատավորներն ազատ են: Բայց սրանից մի քանի տարի առաջ, 1917 թվի հոկտեմբերից (նոյեմբ. 7) առաջ, նրանք կալվածատերերի և բուրժուաների ստրուկներն եյին: Հենց այսօր ել Խորհրդային սահմաններից դուրս, մյուս յերկրներում, կալվածատերերն ու բուրժուաները ճնշում և շահագործում են աշխատավորներին:

«Միությունը ուժ է». իսկ աշխատավորների համար այդ ուժն շատ անհրաժեշտ է: Նրանք պետք է պայքարեն շահագործման դեմ, կալվածատերերի և բուրժուաների դեմ, կոմունիզմի հաղթանակի համար: Ահա Մայիսի մեկը հենց ամենից առաջ ամբողջ աշխարհի բանվորների և աշխատավորների միության, նրանց միջազգային համերաշխության տոնն է:

### Ե՞րբ է ծնունդ առել

Յեվ այդ տոնը 37-րդ տարին է արդեն, ինչ տոնվում է: 1889 թվի մայիսի 14-ին Փարիզում հավաքված սոցիալիստական կուսակցությունների միջազգային համագումարն եր, վոր վորոշեց Մայիսի մեկը դարձնել համաշխարհային բանվորության տոն: Յեվ դրանից հետո ամեն մայիսի մեկին գործարաններից և հանքերից փողոց են դուրս գալիս բանվորների սղմած շարքերը, ահ ու դողի մեջ գցելով բուրժուաների սրտերը: Բուրժուաների սարսափը մի ժամանակ այնտեղ եր հասել, վոր նրանք Մայիսի մեկին Փարիզում, Վիեննայում և ուրիշ քաղաքներում հավաքեցին իրենց փողերն ու թանգագին իրերը և փախան իրենց բնակավայրից: Բուրժուաների համար վոսկուց և թանգագին իրերից զատ ել ինչ կարող է թանգ լինել վոր...

### Պայքար ութ-ժամյա բանվորական որվա համար

Բուրժուական յերկրներում բանվորների մայիսմեկյան նշանաբաններից մեկը ութ ժամյա բանվորական որն է: Հեշտ է ասել. այդքան յերկար պայքարից հետո դեռ մինչև այժմ ել կապիտալիստական վոչ մի յերկրում ամբողջապես և առանց խախտման չի կիրառվում բանվորական 8 ժամյա որը: Վերցնենք «քաղաքակիրթ» Ամերիկան. այնտեղ նահանգներ կան, ուր մեզ նման պատանիներն ու յերեխաները աշխատում են 14 ժամ: Չինաստանում ավելի վատ. 5 տարեկան յերեխան աշխատում է 14-16 ժամ և ստանում որեկան 10-ից 15 կոպեկ: Բավականանանք այս յերկու օրինակով: Յեթե պատանիների և յերեխաների դրությունն է այդպես, հասակավորներինը դուք յերևակայեցեք:

### Նոր պատերազմական վտանգի դեմ

Այդ չի միայն: Բանվորներն ու աշխատավորները Մայիսի մեկին պայքարում են նաև նոր պատերազմական վտանգի դեմ: Մեզանից շատերը կը հիշեն կամ լսել են 1914 թ. համաշխարհային պատերազմի մասին: Շատերի հայրերը պատերազմ գնացին վորպեսզի չվերադառնան ... շատերի մայրերը, քույրերն ու յեղբայրները այդ պատերազմի որերին սովի և հիվանդության մատնված մեռան ... 14 թ. պատերազմը 7 միլիոն զոհ տարավ: Ովքեր եյին դրանք: Իհարկե իմ և քո ծնողները, աշխատավորները: Բուրժուաները յերեք միլիարդ ռուբլի ծախսեցին այդ պատերազմի վրա, վորպեսզի աշխատավորներին իրար վոչնչացնեն, իսկ իրենք իրենց գրպաններն ավելի առատացնեն հակառակորդի հաշվին. ել ինչպես բանվորները կարող են իրենց տոնի որը չպայքարել նաև բուրժուաների թալանչիական նոր պատերազմների վտանգի դեմ:

### Այս մայիսի մեկին

Ներկայումս բոլոր բուրժուական յերկրներում կապիտալիստները մեծ հարձակում են սկսել բանվորների դեմ: Նրանք փորձեր են անում բոլորովին վերացնել 8 ժամյա բանվորական որը և ավելի պակասեցնել աշխատավարձը: Մյուս կողմից՝ բուրժուական ամեն մի պետություն զինվում է մյուսի դեմ. նրանք պատրաստ են ամեն րոպե նոր համաշխարհային պատերազմ սկսել: Նրանք արդեն պատերազմում են Մարոկկոյում, Սիրիայում, Չինաստանում և աշխատում են ճնշել ըմբոստացող գաղութային ժողովուրդների ազատագրական շարժումը: Իհարկե բուրժուական պետությունները թշնամի լինելով իրար հետ, ավելի քան թշնամի յեն Խորհրդային Միությանը և իրենց ատամներն են կրճտացնում մեզ վրա, մանավանդ, յերբ տեսնում են, վոր մենք հետզհետե վերաշինում ենք մեր ավերակ յերկիրը և սոցիալիզմ ենք կառուցում: Այսպիսի պայմաններում է, վոր համաշխարհային աշխատավորությունը պետք է տոնի Մայիսի մեկը — իր տոնը: Նա պայքարելով 8 ժամյա բանվորական որվա նվաճման և պահպանման համար, իր աշխատավարձի բարձրացման համար, համաշխարհային



# ԿՈԼԱԿԱՅԻՆ ԿՈՄԻՆՏԵՐՆ





Կոլ՛կան դերձակի աշակերտ Շմեռկայի մտերիմ ընկերն էր։ Յերկուսով համարյա թե մի հասակի եյին, յերկուսն էլ ունեյին կապույտ աչքեր յեվ միանման ամուր բռունցքներ։ Սակայն Շմեռկային վիճակվել էր կարել շորերի ողերը, կոճակները յեվ խնամել իր տիրոջ՝ Պալ Պալիչի յերեխաներին։

Իսկ Կոլ՛կան զբաղվում էր բոլորովին ինքնուրույն յեվ նույնիսկ օգտավետ գործով. նա լրագիր էր վաճառում։

Առավոտից մինչեվ յերեկո Կոլ՛կան կանգնում էր փողոցի անկյունում, ուղիղ Պալ Պալիչի բնակարանի լուսամուտների տակ յեվ զիլ ձայնով կանչում էր.

— Ընկեր Կարախանի նոր նոտա՛ն ճապոնական վամպերալիստներին...

— Փարիզի պրոլետարիատի հսկայական ցո՛ւյցը։

Շմեռկայի համար այդպիսի կրթված ընկերոջ հարեվանությունը շատ ձեռնտու էր։ Նա տանը մնալով առաջինն էր, վոր ներքնահարկի բաց լուսամուտներից իմանում էր ընկերոջից բոլոր նորությունները։

Բայց յեվ այնպես Շմեռկան քիչ նախանձում էր իր ազատ ընկերոջը։

Մեկ անգամ, հունիսյան մի տաք յերեկո, Կոլ՛կան շնչակտուր ու շտապ կանչեց լուսամուտից նայող ընկերոջը։

— Կա -Շմե՛ռ։ Զե՞ս—ին տել-նըս նը—տա

— Զու-ի՞ն։

— Նգի—միտի։ Կոմինտերնի հինգերորդ կոնգրեսը գալու յե նիստի.... վորպեսզի բոլոր բանվորների առաջ... վվվո՛

— Ազնիվ խո՞սք։

— Յես քեզ ասում եմ։ Զիր-վա...

Յեվ Շմեռկան տեսավ, ինչպես ընկերը սրընթաց վազեց փողոցով։

Շմեռկան խորը շունչ քաշեց։ Կոլ՛կան նրա տամարը բռնել էր։ Շմեռկան հռետորներին լսելը շատ էր սիրում։

Մի րոպե անց Շմեռան կագնած Պալ Պալիչի առաջ յեվ խընդրում էր.

—Թույլ տվեք գնալ կարմիր հրապարակը. յես շուտով կվերադառնամ։

— Ի՞նչ կա այնտեղ, վոր գնում ես։

— Ասում են բոլոր ժողովուրդները հավաքվելու յեն այնտեղ...

-- Հետո ի՞նչ...

— Շատ հետաքրքիր է, Պալ Պալի՛չ, մեկը գերմաներեն կխոսի, մյուսը չիներեն կդոդռացնի։ Լսել եմ, վոր իսկական աֆրիկացիներ էլ են յեկել։

Վերջապես Պալ Պալիչը ասաց.

—Գնա... բայց տե՛ս յերկար չմնաս...

Շմեռկան յերկար չսպասեցրեց իրեն։ Նա ճանկեց սեզոնին անհամապատասխան մի ձմեռային ականջավոր գլխարկ յեվ իր հասակի համեմատ շատ մեծ մի վերարկու, վորը Պալ Պալիչի վարպետները յեվ ինքը Պալ Պալիչը ծիծաղելու համար «հուր-ժակետ» եյին անվանում։

II.

— Խոսքը տրվում է ընկեր Րոյին,—լսվում է տրիբունից։

Շմեռկան շտապով հրմշտկում է սրան նրան յեվ ինքը առաջ է անցնում, վորպեսզի լավ տեսնի ու լսի։ Ընկեր Րոյը՝ նա հենց ինքն է, հնդկական ընկերների ներկայացուցիչը։ Հիմա նա կանարգի անգլիական վամպիրալիստներին...

Թխադեմ, գեղեցիկ յերիտասարդը հայտնվեց բազմահազար ամբոխի առաջ։ Շմեռկան իր աչքերը սեվեռեց դեպի նա.

Յեվ մնաց սառած...

Հետո ընկեր Րոյին փոխարինեց մի ուրիշը։ Հետո յերկրորդը, յերրորդը, չորրորդը, հինգերորդը... Շմեռկան լսում էր։ Բոլոր խոսողներն իրենց ճառերն սկսում եյին Լենինին ուղղված հարգանքի խոսքերով։ Վերջացնում եյին՝ խոսելով դարձյալ Լենինի մասին։

— Թող հավիտյան ապրի մեր սրտերում մեծ ղեկավարի հիշատակը։

Շմեռկան հուզվել էր։ Նրա կոկորդում կարծես ինչ վոր մի բան ճնշելիս լիներ... Նա չնկատեց, թե ինչպես վերջացավ միտինգը։

### III.

*Դեռ ուշ չեր։ Շմետկան մյուսների հետ ուղեկցեց հնդկական յեվ աֆրիկական ընկերներին։ Նա գնում եր նրանց հետքերով։ Հանկարծ նրա վոտի տակ ընկավ մի ինչ վոր կարծր բան։*

*Նայեց՝ կոճակ եր։*

*— Նրանցն ե,—մտածեց Շմետկան։ Նա վերցրեց կոճակը յեվ խնամքով պահեց գրպանում, նախապես ստուգելով, թե հո գրպանը ծակ չի՞. նա տրամվայով վերադառնալիս՝ գրպանից հանեց կոճակն ու սկսեց ուշադիր կերպով զննել։*

*— Այս ի՞նչ ե նշանակում—հարցրեց Շմետկան կողքին կանգնած ուսանողին, ցույց տալով կոճակի հետեվում ոտար լեզվով գրված բառերը։*

*—* Berlin*—կարդաց ուսանողը։*

*— Բեռլի՞ն... յես գիտեմ, այնտեղ գերմանացիներ են։*

*— Ճիշտ ե,—ժպտալով պատասխանեց ուսանողը։ Շմետկան նույնպես խորամանկ կերպով ժըպտում եր։*

*Տուն վերադառնալուց հետո՝ Շմետկայի առաջին գործն յեղավ՝ գտնել այն տուփը, վորի մեջ Պալ Պալչի արհեստանոցի վարպետները պահում եյին հին կոճակներ։*

*Գտնելով տուփը, Շմետկան կոճակները թափեց սեղանի վրա յեվ սկսեց ջոկել։*

*Առաջին անգամ իր աչքին խփեցին անգլիական կոճակները։*

*Շմետկան լավ հիշում եր. այդ կոճակները մնացել եյին մի անգլիական շինելից, վորից իր վարպետը մի կնոջ համար վերարկու եր կարել։*

*Հետո գտավ ֆրանսական, լեհական, կարմիր բանակայինների համազգեստի կոճակներ յեվ եյլի ուրիշ տեսակներ, վորոնց նա չեր ճանաչում։*

*Շմետկան ժամանակ չկորցնելով, ջանասիրությամբ կավիճով մաքրեց կոճակները յեվ իսկույն կարեց «հուր-ժակետին»։ Նա մոտեցավ հայլուն. «հուր-ժակետը» փայլում եր բոլորովին նոր փայլով։*



**Շմետկան լսում եր**



**Թխադեմ, գեղեցիկ յերիտասարդը հայտնվեց բազմահազար ամբոխի առաջ,**

*— Շմետկա՛,—կանչեց այդ ժամանակ տիրուհին՝ Անտոնինա Սերգիյեվնան։—Ի՞նչ ես հայլու առաջ կոտրտվում. յե՛կ այստեղ։*

*Շմետկան դանդաղորեն հագավ վերարկուն, հպարտորեն դուրս ցցեց կոճակներով փայլող կուրծքը յեվ այդպես ներկայացավ տիրուհուն։*

*— Տե՛ր Աստված,—տարածեց ձեռքերը Անտոնինա Սերգիյեվնան... հրդեհաշե՞ջ ես, ի՞նչ ե։*

*— Հրդեհաշեջ չեմ յես, հորաքո՛ւր. այլ այստեղ, ինձ մոտ ամբողջ Ինտերնացիոնալն ե հավաքվել—բացատրեց Շմետկան։*

*—Քեզ հետ խոսելը դժվարանում ե։ յեթե այդ ասեյիր Պալ Պալչին, նա քո ամբողջ Ինտերնացիոնալը կպոկեր, իսկ ականջներդ բոքահան կաներ։*

*— Իրավունք չունի։ Ամբողջ աշխարհում հայտարարված ե՝ ձեռքերդ հեռու պրոլետարիատից,—կտրեց տիրհուն Շմետկան։*

*Տիրուհին բարկությունից թքեց.*

*—Թո՛ւ...—չորանա՛ս,—գոռաց նա։—Լավ ե վերցրու այս յերեխային. իսկ յես գնում եմ հարեվանուհու մոտ զրից անելու։ Զայրացած տիրուհին իր ուսերին գցեց շալը յեվ Շմետկային թողնելով յերկուտարեկան Վասյայի մոտ, փակեց սենյակի դուռը յեվ հեռացավ։*

### IV.

*Շմետկայի բախտից՝ Վասյան սկզբում տզտզում եր. իսկ հետո սկսեց բարձրաձայն լաց լինել։ Շմետկան աշխատում եր նրան հանգստացնել։ Ա՛յս արեց, ա՛յն արեց. բայց վոչինչ չոգնեց...*



—Թո՛ւ...—չոռնաս,—գոռաց նա—

*Հանկարծ նրա գլխում մի միտք ծագեց։ Վերցրեց իր «հուր-ժակետը» յեվ նստեց Վասյայի կողքին, հատակի վրա։*

*— Մի՛ լացիր, մի՛ լաց, Վա՛սյա, նստիր այստեղ։ Տե՛ս ինչպիսի՞ կոճակներ են։ Ի՞նչպես են պլպլում։ Ա՜... Ա՜։*

*Վասյան բարկացած յեվ խեթ-խեթ նայեց կոճակներին։*

*— Վա՛սյա, այս Ինտերնացիոնալն ե... Վասյա՛, յեկ Ինտերնացիոնալ խաղանք։ Ցենթաղրենք՝ իմ կուրծքը տրիբունան ե, դո՛ւ ամբողջ ժողովուրդը, իսկ կոճակները կոմինտերնի անդամները... Լսի՛ր, խոսքը պատկանում ե հնդիկ ընկերոջ՝ Ռոյին։*

*— Ո՞յ—արձագանքեց Վասյան՝ դադարելով լաց լինելուց։*

*— Ռո՛յ, Ռոյ, ուրախացած ճչաց Շմեռկան.— նայի՛ր, Վասյա, ինչպես հիմա նա կխոսի հնդկերեն։*

*Շմեռկան ձեռքը դնելով կոճակին, փոխելով ձայնը, սկսեց շտապ խոսել։*

*— Ալա-վերդի, ալա-վերդի, սալյամ մալիկոմ, մալիկում սալյա, մուխամեդ, ախմեդ, բեվոլյուսյոն... Վա՛սյա, հիմա լսի՛ր թարգմանում եմ։ Շմիռկան խաղով տարված ցատկում ե վեր, կանգնում ու հետ ձգելով ձեռքերը սկսում ե.*

*— Կամպիրալիստները հպատակեցնում են գաղութները... վորպեսզի շատ ստրուկներ ունենան... ընկերնե՛ր... արդեն վառվում են մեր սրտերը... ընկեր Լենինը սովորեցնում եր, թե ի՞նչ ե հարկավոր անել... Այսոր մենք նրա գերեզմանի առաջ ենք... մենք յերդվո՛ւմ ենք... կեցցե՛, համաշխարհային հեղափոխությունը... ուռա՜...*

*Վասյան աչքերը լայն բացած՝ նայում եր։ Նրա յերեսին այլեվս արցունքներ չկային։*

*— Դե գոռա՛ ինձ հետ միասին՝ ուռա՜ա՜—հրեց նրան Շմեռկան—Ուռ՛ւ—ա՜ա՜ա՜, բացականչեց Վասյան թափահարելով ձեռքերը։*

*Այդ գործում Շմեռկան ոգնեց «ամբողջ ժողովրդին»։ Նա ամբողջապես կարմրել եր։*

*Յերբ ծափահարությունները վերջացան, Շմեռկան հայտարարեց, վոր հիմա խոսելու յե գերմանական ներկայացուցիչը։*

*— Տարի-բարի կայզեր-Փայազեր,—սկսեց նոբից արագությամբ.—բաստաբարին ինգերմա... վաս իս դաս։ Դաս կվաս մվաս։ Շպրեկխեն զի դոյչ։ Հո՛խ հո՛խ։*

*— Ուռ—ա՜ա՜ա՜- ճվաց Վասյան՝ չսպասելով հրավերի։*

*— Կանգնի՛ր, բավական ե. լսի՛ր թարգմանությունը...*

*—Ընկերնե՛ր։ Գերմանացի ընկերն ասեց. «գերմանիայի ժողովուրդը հանել ե բանտերից... վերանվանել իրենց քաղաք Հինդենբուրգը Լենինբուրգ... կամպիրալիստները չեն թույլ տալիս։ Դե նրանց վերջը հեռու չե. Լենինիզմի արշավին նրանք չեն դիմանա... Ուռա՜ա՜ . . . . . . . . . . . . . . . .*

*Կես ժամից հետո յեվ խաղը դեռ շարունակվում եր։ Բայց Շմեռկան արդեն խոսում եր վո՛չ թե հնդկացի, ֆրանսիացի ու անգլիացի ընկերների կողմից, այլ հենց իր կողմից։ Նա մոռանալով կոճակները դաղում եր Վասյային։*

*... —ա՞յ, դու գոռում ես՝ կործեն կամպիրալիստները, բայց չես ըմբռնում, վոր առաջին կամպիրալիստը քո հայրն ե, Վա՛սյա, իմ տե՛րը։*

*— Ուռա՜ա՜ա՜—բացականչեց Վասյան։*

*Շմեռկան վոգեվորված շարունակում եր.*

*—... Խորհրդային իշխանությունը դեկրետով 8 ժամյա աշխատանքի որ ե մտցրել։ Բոլորն աշխատում, գնում են տուն, իսկ յես դեռ ցախ պիտի կոտրեմ, մեկ ել բեզ հետ ամբողջ յերեկոն, Վա՛սյա, բաշ պիտի գամ...*

*— Ուռ—ա՜ա՜ա՜--բացականչում եր Վասյան...*



—Ուռու—ա ա՜ ա՜ ա՜ բացականչում եր Վասյան.



ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

# ԼՈՒՅՍԵՐԸ

1.

Գյուղական պիոներ էր Սեթոն.
հայրը հողագործ էր հասարակ.
ունեյին պապական մի տուն,
ու գետնափոր մի մարագ։
Յեզներ էլ ունեյին առաջ,
յերբ դեռ կոխը
չէր անցել իրենց գյուղի տակով.
իսկ հիմա,
յերբ գյուղն է լցվում նախիրի բառաչը,
Սեթոյենց տուն է գալիս
միայն մի կով։
Իսկ հայրը յեզան պես դաղում է,
վոր նորից գնի լծկան.
— Առանց լծկան, հայրը պատմում է,—
գյուղացին նման է
ցամաք ընկած ձկան։
Ու հայրը յերբ ամեն տարի
քաղում էր արտը ծովի պես,
կեսը պահում էր ցանելու,
կեսը ուտելու համար,
ու փողով ծախում էր մնացած կեսը։
Յեվ եղպես, մի օր էլ վեր կացավ,
ու արտերի միջով քաղած՝
Սեթոյի ձեռքից բռնելով
գնաց քաղաք։
Զարմացավ Սեթոն, ապշեց,
նոր էր նա քաղաք մտնում.
իրիկունը,
վառվում էր հազար արեգակ,
յերբ իջնում էր գյուղի արեգակը,
յեվ օրը մթնում։
Ու ելի շատ բան տեսավ
քաղաք ընկած պիոներ Սեթոն,
իսկ հետո,
ելի նույն ճամբերով,
իր հոր հետ վերադարձավ տուն։
Շատ բան էր տեսել քաղաքում,
նորություն հազար տեսակ,
բայց ախր ինչո՞ւ
ամենից լավ հիշում էր ե՛ն մեկը,
թե ի՞նչպես վառվում են քաղաքում
հազար ու մի արեգակ։
Յեվ յերբ վոր իրիկվա մութին
հասան գեղը իրենց հին,
Սեթոյին խավար թվաց գեղը,
ու խավարը թվաց ամեհի։

2.

—Ապի՛, են ինչո՞ւ քաղաքում
եղքան շատ լույս կա վառած,
իսկ ստեղ,
գեղ տեղում,
մութն է դեռ ու շատ խավար։
Ի՞նչ ասի հայրը Սեթոյին.
—Հին վախտից ըտենց էր, բալա՛մ,
քաղաքինն էր մենակ
եդ լուսավորությունը.
հմի ասում են,
վոր գեղն էլ պտի լուսավորվի,
եդպես է ուզում
Սովետի կառավարությունը։
Ա՛յ, հրեն ջրանցքի ճամփեն,
հրեն.
բերել են հազար ցեմենտի բոչկա...
ու ցույց էր տալիս ճիպոտով,
իսկ ճիպոտի ծայրին,
Սեթոյի աչքերի դիմաց,
վառվում էր կարծես ելեկտրական լամպոչկա։

3.

Ու յերբ վոր ջրանցքի ճամբին
բանվորներն սկսեցին բանել,
գնաց նրանց մոտ Սեթոն,
խնդրեց,
վոր թույլ տան իրենց օգնել։
Հողն ու քարը թափում էր դուրս
իր ընկեր պիոներների հետ,
ու մեկ-մեկ՝
նայում էր յետ։
Ենտեղ քաղաքն է,
Մեծ քաղաքը,
քաղաքի լուսավորությունը.
գյուղն էլ պիտի լուսավորվի,
վորովհետեվ եդպես է կամեցել
Սովետական կառավարությունը։
. Իսկ յերբ վոր մթնում էր գեղը,
իրիկուն իջնում էր նորից,
կտուր էր բարձրանում Սեթոն,
վոր հեռու քաղաքի լույսերը
տեսնի։
Ու հեռվից տեսնում էր շողացող
պսպղուն լույսերի շարան,
ու նրան ավելի խավար էր թվում
գյուղի խավարը։
Բայց գիտեր արդեն Սեթոն,
վոր հերթը գեղինն է,
գեղն էլ շուտով կ՛ունենա
եդ լուսավորությունը,
վորովհետեվ եդպես է կամեցել
բանվորի
ու գյուղացու
կառավարությունը։




Մի դեպք կը պատմեմ. սա արդեն հնարած չի։

Մեզնից շա՜տ յեվ շա՜տ հեռու, մեծ ծովի մոտ, կա մի փոքր յերկիր, վոր կոչվում ե Հոլանդիա։ Եդ յերկիրը մերի նման չե. ենտեղ գետինը ծովի մակերեվույթից ցածր ե, իսկ մեզնում բարձր ե։ Հիմա կը զարմանաս, թե ապա ի՞նչպես ե, վոր ջուրը չի ծածկում նրանց յերկիրը։ Եդ աշխարհի բնակիչները խելոք, աշխատասեր ու զարգացած մարդիկ լինելով՝ միջոցներ են ձեռք առել դրա դեմ։

Նրանք իրենց յերկիրը շրջապատել են հաստ ու բարձր պարիսպներով։ Ծովի ալիքները չեն կարողանում եդ պատերից ներս անցնել։ Դե հիմա իմացի՛ր, թե ի՜նչ ահագին նշանակություն ունին եդ պատերը։ Հոլանդիայում փոքրիկ յերեխաներն ել լավ գիտեն, թե ի՞նչ սոսկալի վտանգ ե սպառնում իրենց յերկրին, յեթե այդ պատերին մի բան պատահի։ Այդ պատերի շուրջը շինված են հողաթմբեր— ահագին, լայն ճանապարհների նման յեվ կոչվում են պատնեշներ։

Եդ յերկրում մի ժամանակ Հանս անունով մի յերեխա եր ապրում։ Մի անգամ Հանսը, իր փոքրիկ յեղբոր հետ, գնաց զբոսնելու քաղաքից դուրս։ Ենտեղ վոչ մի տուն չկար, բայց ծաղիկ շատ կար։

Ենտեղ Հանսը բարձրացավ պատնեշի վրա, իսկ փոքրիկ յեղբայրը խաղում եր ցածում։

Հանկարծ փոքրիկ յեղբայրը ճչաց.

— Հանս, ես ի՜նչ փոքրիկ ճեղք ե, տես վո՜նց ե բլբլում...

—Ճե՞ղք, վո՞րտեղ, հարցրեց Հանսը։

—Ենտեղ, հողաթմբի մեջ, պատասխանեց փոքրիկը, մեջն ել ջուր կա։

—Մի՞թե, աղաղակեց Հանսը յեվ գլխապատառ ցած թռավ յեղբոր մոտ։

Եդ մի շատ փոքրիկ ճեղք եր, հողաթմբի մեջ, միջովը կաթիլ-կաթիլ ջուր եր հոսում։

—Եդ հո պատնեշն ե ծակվել, ապա ի՞նչ անենք, աղաղակեց Հանսը։

Նայեց շուրջը, վոչ մարդ եր յերեվում յեվ վոչ բնակություն կար։ Նայեց ճեղքին, փոքրիկ կաթիլները թրջում եյին հողը. անցնում։ Նա գիտեր, վոր ջուրը շուտով եդտեղ մեծ անցք կը բանա։ Քաղաքն ենքան հեռու եր, վոր յեթե վազեր օգնություն կանչելու, ուշ կլիներ։ Ինչ աներ։ Նորից նայեց. տեսավ, վոր ճեղքը արդեն մեծացել ե յեվ ջուրը շիթերով հոսում ե ենտեղից։

Հանկարծ Հանսի գլխում մի միտք ծագեց. իր ցուցամատն ամուր խրեց եդ ճեղքի մեջ ու ասաց յեղբորը։

—Լսի՛ր, վազի՛ր քաղաք, ասա՛ վոր պատնեշում անցք ե բացվել, են ել ասա՛, վոր յես փակել եմ անցքը ու փակած կը պահեմ, մինչեվ օգնություն հասնեն։

Փոքրիկը հասկացավ, վոր շատ լուրջ բան ե պատահել յեվ ինչքան կարող եր արագ վազեց քաղաք։ Հանսը մնաց մենակ. նա մատը պինդ խրել եր անցքը. լսում եր, թե ինչպես ջուրը թափվում եր քարերի վրա. բ՜ըլ բը՜լ բ՜ըլ...

Նրա ձեռքը կամաց-կամաց թմրում եր։ Մյուս ձեռքով սկսեց շփել եդ ձեռքը, բայց րոպե առ րոպե նրա ձեռքը ավելի եր սառչում ու թմրում։ Նայեց դեպի քաղաք տանող ճանապարհը. վոչ վոք չեր յերեվում։ Սառնությունը նրա ձեռքի միջով անցնում եր վեր, սկզբում մինչեվ արմունկը, հետո ուսին հասավ։ Ա՜յ թե սառն եր ... Շուտով սկսեց ցավ զգալ։ Ցավը մատից անցնում եր թաթին, ենտեղից բազկին, հասնում եր ուսին յեվ ենտեղից, կարծես վզի վրայով դեպի ներքեվ եր գալիս։

Ժամանակն անցնում եր դանդաղ ու տանջալի։ Նա իրեն բոլորովին մենակ եր զգում, իսկ ձեռքի ցավը հետզհետե շատանում եր ու շատանում։ Չորս աչք արած՝ Հանսը նայում եր ճանապարհին, բայց վոր չեր յերեվում։ Հետո նա հոգնած թեքվեց ու գըլուխը հենեց պատին։

Յերբ ականջը հողին առավ՝ նա լսեց ծովի բարկացած աղաղակը. կարծես թե ասելիս լիներ—. «Յես մեծ ծովն եմ, վոչ վոք չի կարող ինձ դեմ կենալ. դու ի՞նչ ես, ա՛յ մանկիկ, վոր ուզում ես պահել ինձ։ Զգուշացի՛ր, զգուշացի՛ր»։

Հանսի սիրտը թուլացավ. «միթե նրանք իսկի չեն գալ»։ Ահը պատեց նրան։ Իսկ ջուրը զարնվում եր պատնեշին ու փնթփնթում— «Յես կանցնե՛մ, կանցնեմ միջովը . . . յես կը հանեմ քեզ, յես կը հանեմ քեզ, փախի՛ր, փախի՛ր, բանի դեռ ազատություն չեմ առացել»։

Հանսը ուզեց մատը հանել. նա ենպես եր վախենում, վոր համարյա վորոշել եր փախչել։ Հանկարծ հենց եդ րոպեյին նա հիշեց, թե ինչ մեծ բան ե կախված իրենից։ Յեթե մատը հաներ, ջուրը կը լայնացներ ճեղքը, կը քանդեր պատնեշը յեվ ջուրը կը հեղեղեր գետինն ու տները։ Նա սղմեց ատամները յեվ մատը առաջվանից ավելի պինդ խրեց ճեղքը։

—Դու ետեղ չես հանի,— շշնջում եր նա, —յես կը կանգնեմ ետեղ։

Նույն եդ րոպեյին նա ինչ վոր աղմուկ լսեց։ Հեռու, շատ հեռու, ճանապարհի ծայրին, ինչ վոր բան եր յերեվում։ Եդ մարդիկ եյին գալիս։ Վերջապես նրանք հասան. նրանք բահեր ու թիակներ եյին բերում ու համարյա վազելով եյին գալիս։ Յե՛վ գալիս եյին, յե՛վ աղաղակում.



—Գալիս ենք, պինդ կա՛ց, գալիս ենք։

Մի րոպեից հետո նրանք տեղ հասան։ Ու յերբ տեսան Հանսին, վոր մատը պինդ խրել եր ճեղքը յեվ ինքը սաստիկ գունատվել, բարձրաձայն ճչացին. «Ուռա՛ . . .»։ Նրանք գրկեցին Հանսին քնքշությամբ, շփում եյին նրա ձեռքը, ու նրան հերոս եյին անվանում:

ՍՈՂՄՈՆ ՏԱՐՈՆՑԻ

# ՆՐԱՆՑ ՅԵՎ ՄԵՐ ՏՈՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Նրանց տները իրար շատ մոտիկ են,
Նրա հարեվանը սպեկուլյանտ ե, չարչի.
Նա տունն յեկավ իրա՝ ուղիղ ժամը հնգին,
Հոր ծնկներին նստեց մի շատ փոքրիկ աղջիկ։

Հայրը դեպոյի բանվոր եր, հին,
Ստաժավոր, կոփված, մարտիկ եր անահ.
Ո՛, քանի՞ տեղ նա տեսել եր մահին.
Աշխատանքից հոգնած տուն ե յեկել անա։

—Պա՛պա, հրեն պատուհանից ներս
Ինչ լավ քեֆ, աղմո՛ւկ, խնդություն ե,
Բա մենք ինչի՞ չանենք, ապա՛ մի տե՛ս, մի տե՛ս...
—Բալի՛կ, այսօր միայն, միայն նրանց տոնն ե։

Նրանք ծու յեն ներկել իրանց հիսուսի զատկին,
Մի մարդու, վորին չեն տեսել ու չգիտեն.
—Պա՛պա, են մա՞րդն ե մեծ, թե՛ ընկեր Լենինը,
—Իհարկե Լենինը, իսկ այդ ո՞վ չգիտե։

—Բա մե՛ր տոնը յե՞րբ ե, դե՛ մի ասա՛, պա՛պա.
Վաղը, չե՞, պապա ջան, մեր տո՛նն ե լինելու,
—Մեր տոնը, բալիկ ջան, Հոկտեմբերն ե, հապա՛
Մայիս մեկը կարմիր, ա՛յ յերբ ենք տոնելու։

—Եդ օրը քեզ կարմիր շորեր առնեմ պիտի,
Լենտն էլ սիրո՛ւն, մաքո՛ւր, արեվից կարմրուն.
Լենինի նկարն էլ զարկելու յես սրտիդ,
Վոր տոնես մեր տոնը պիոներների շարքերում։

1926 թ.



Ն. ԶԱՐՅԱՆ

# ԽՈՒԺԱՆԸ

Հայրիկս սայլատ էր... Տարան պատերազմ։
հայրիկս չեկավ ճակատից.
Վշտից ու ցավից իմ մայրիկս մեռավ,
յես ընկա ցեխոտ հատակին։

Տարան Ամերկոմ... Այնտեղից էլ փախա։
Այսպես դուրս յեկա յես փողոց։
Հիմա գողանում եմ՝ վոնց վոր ավազակ,
ու ձեռքըս էլ չի դողդողում։

Մեշոկ-վերարկուս դուքանից թռցրի,
կասկաս էլ տվեց մի զինվոր։
Կոշի՞կն ուր... փոշի եմ հագել վոտքերիս.
կոշիկըս համ հին է, համ նոր։

Փոխել եմ մինչեվ որս ինչքա՜ն ընկերներ.
վորտե՞ղ են Ազատն ու Տիկոն,
նրանց տեղ հիմի նոր նորերն են բռնել,
նրանց պես զզված վարտիկով։

Նրանց հետ մտնում ենք ղանտար, ճաշարան,
խնդրում ենք. չը տան՝ թռցընում ենք.
մինչեվ ուշ գիշերը մի տեղ տափ արած
իրար պինդ կպչում ու քնում ենք։

Ամառ. յերկնքի տակ, տեղում պատահած,
մայթին կամ կանաչ բուլվարում.
ձմեռ. շնաբուն, կամ թե տաք տան մի հաշտ
գտնում ենք ու մունջ ծվարում։

Այն հաշտը, այն տունը. վորտեղ մենք քնում ենք,
պահում ենք աչքի լույսի պես,
ծանոթ այն տնից էլ բան չենք թռցընում մենք,
թե բուռ-բուռ վոսկի էլ թափես։

Մեկ մեկ պատահում է,—յերբ ցուրտ է, աշուն է,
մեշոկ էլ չկա հագներիս.
դրսում քամախառն անձրեվը խշշում է,
զարկում է քամին դռներին—

Մթնում կծկվում ու հիշում ենք էլի,
հիշում ու պատմում ենք իրար.
հայրերը բոլորը գնացել են կռիվ,
մայրերն էլ բոլորը մեռած։

Մեկ-մեկ էլ անցնում են շարքով պիոներները.
թմբուկ է, խմբերգ, հրահանգ.
ուզում ենք մենք էլ շարժելով մեր ձեռները
նրանց հետ քայլել ու խաղալ։

Կապույտ բլուզները, կարմիր փողկապները
փայլուն դրոշակները ծածան.
նրանց կարոտից յես այնքա՜ն լացագնել եմ,
նայել եմ այնքա՜ն շլացած։

Ինչո՞ւ յենք պոկվել մենք նրանց շարքերից,
յեվ ո՞վ է նետել մեզ փողոց։
Վոչինչ չեմ հասկանում յես... անցնում են նորից
նրանք պայծուն ծիծաղով։

Բայց յես իմ մտքումս ամուր վորոշել եմ.
դառնամ յես նրանց պես պիոներ.
նրանց հետ, նրանց պես մարզել իմ ուժերը,
նրանց պես նրանց վողջունեմ։

Նրանց շարքերի մեջ կանգնեմ յես անահ,
նրանց պես հագած նոր բլուզ.
նրանց պես կերգեմ յես «Ինտերնացիոնալ»
նրանց հետ, նրանց պես փայլուն։



Լենինականի գավառի Բրդական պիոներ կոլլեկտիվների կոլվարները



# ՄԵՐ ԲԱՆՋԱՐԱՆՈՑԸ

Անցյալ անգամ տեսանք, թե ինչպես պետք ե հողը մշակել, մարգեր պատրաստել և սերմեր ջոկել։ Այդ ամենը կազմում ե բանջարանոցային աշխատանքների առաջին մասը։ Յերկրորդ և հիմնական խնդիրը, վորը դրվում ե կոլեկտիվի առաջ, այդ ցանելու և խնամելու աշխատանքներն են։

Նպատակահարմար ե և արդյունավետ՝ սերմերը շարքով ցանել կամ՝ ինչպես ասում են, շարքացան անել։ Շարքացանի ժամանակը հեշտ ե բույսերին խնամել և վոր գլխավորն ե՝ հնարավոր ե առանձին առանձին յուրաքանչյուր բույսը դիտել և ուսումնասիրել։

Շարքացանի համար պետք ե փորել ակոսներ, վորոնց խորությունը պիտի կախված լինի սերմերի մեծությունից։ Վորքան սերմերը խոշոր են, այնքան ակոսները խոր պետք ե լինեն։ Ակոսներ փորելու գործիքը հետևյալ կերպ կարելի յե պատրաստել։ Հարկավոր ե վերցնել մի յերկար փայտ և վրան ամրացնել մեկը մյուսից մոտավորապես 2½ վերշոկ հեռավորությամբ սրածայր փայտեր։ Իսկ այդ գործիքը քաշելու համար՝ փայտի ծայրերին պետք ե կապել յերկար պարաններ։ Յեթե հնարավոր չե գործիք պատրաստելը, պետք ե մարգի մի ծայրից մյուս ծայրը գետնին մոտ պարան կապել և նրա ուղղությամբ փայտի սուր ծայրով ակոս բաց անել։



Ակոսներ են պատրաստում

Ակոսները պատրաստելուց հետո պետք ե սկսել ցանելու աշխատանքները։ Յերբ ցանում եք վաղ գարնան, սառը հողում, սերմերը պետք ե լինեն չոր, վորովհետև հողի մեջ կա բավական խոնավություն և սերմերը առանց թրջելու կարող են ծլել։ Բացի այդ՝ չոր սերմերը հողի մեջ, գարնանային ցրտերին ավելի դիմացկուն են։

Յերբ ցանում եք տաք յեղանակներին, յերբ հողը սովորաբար չոր ե լինում, պետք ե սերմերը մեկ—յերկու որ թրջել և ցանելուց հետո շուտ-շուտ ջրել, հակառակ դեպքում սերմերը կարող են չորությունից վոչնչանալ։

Համասար քանակությամբ ակոսների մեջ սերմեր գցելուց հետո՝ պետք ե փոցխի հետևի մասով ծածկել հողով։

## ԻՆՉՊԵՍ ՋՐԵԼ ԲԱՆՋԱՐԱՆՈՑԸ

Ցանած մարգերը մինչև ծլելը և առաջին տերևների յերևալը, պետք պահել խոնավ։ Յեթե հնարավոր չե ջրել, կարելի յե մարգերի յերեսը ծածկել խսիրով կամ չոր տերևներով, վորոնք ծլելուց հետո պետք ե զգուշությամբ վերցնել։

Արև ժամանակ ընդհանրապես չեն ջրում, վորովհետև ջրի մի մասը առանց ոգուտ տալու գոլորշիանում ե։ Պետք ե ջրել յերեկոյան, արևը մայր մտնելուց հետո։ Այդ դեպքում ջուրն ամբողջ գիշերը մնում ե հողի մեջ և ծծվում ավելի խորը։ Լավ ե ջրել առվի կամ անձրևի ջրով։

## ՄԱՐԳԵՐԸ ՊԵՏՔ Է ՄԱՔՐԵԼ ՎՆԱՍԱՏՈՒ ԲՈՒՅՍԵՐԻՑ

Վորքան էլ բանջարանոցի հողը մաքրենք ավելորդ բույսերի մնացորդներից, դարձյալ մարգերի վրա կնկատվեն վնասատու բույսեր, ինչպես ասում են՝ մոլախոտեր։ Դա բացատրվում է նրանով, վոր այդ բույսերի սերմերը քամիների, թռչունների, ջրերի միջոցով ընկնում են մարգերի վրա։ Առանձնապես ուշադրություն պետք է դարձնել սերմերը ցանելուց հետո յերևացող մոլախոտերի վրա։ Նախ քան մեր ցանած սերմերի ծլելը, մոլախոտերն արագ ծլում են, զարգանում և խլում սննդարար նյութերը և խոնավությունը։ Բացի այդ՝ նրանք ծածկում, ստվեր են գցում մեր բույսերի վրա և թույլ չեն տալիս, վոր նրանք զարգանան։ Այդ շրջանում է, վոր պետք է մոլախոտերը սուր փայտով արմատահան (քաղհան) անել և վոչնչացնել։

Մոլախոտերը պետք է հանել արև ժամանակ, անձրևից կամ ջրելուց հետո։

Այժմ տեսնենք, թե բանջարանոցային ինչպիսի բույս պետք է ցանել։

### ՊՈՄԻԴՈՐ

Պոմիդորը ցանում են, յերբ որերը սկսում են տաքանալ։

Շատ համեղ պոմիդոր ունենալու համար, պետք է սերմերը ջերմոցի մեջ ցանել և հետո տեղափոխել մարգերում։ Յեթե հնարավոր չէ ջերմոց պատրաստել, այն ժամանակ սերմերը պետք է ցանել մարգերում։ Սերմերը վորպեսզի չմրսեն, գիշերները պետք է մարգերը ծածկել խսիրներով։

Խոնավ հողի մեջ պոմիդորի սերմերը սկսում են ծլել 7—8 որից հետո։ Ծլած բույսի սկզբնական խնամքը կայանում է նրանում, վոր պետք է հողը փափկացնել, քարերը մաքրել և, վոր գլխավորն է, քաղհան անել։ Այդ աշխատանքը պահանջում է մեծ զգուշություն, հակառակ դեպքում դուք կարող եք վնասել նոր ծլած բույսերը։



Յերբ պոմիդորը կճյուղավորվի, դուրս կգան ծաղիկները, պետք է ավելորդ ճյուղերը, թույլ ծաղիկները կտրատել և թողնել ամեն մի ճյուղի վրա մի քանի ծաղիկ։ Այդ աշխատանքների շնորհիվ բույսը լավ կլուսավորվի և ստացված պոմիդորները կլինեն առողջ և համեղ։

Պոմիդորի ցողունները քամիներից պաշտպանելու համար պետք է ցողունների մոտ խփել փայտե նեցուկներ։

### ԿԱՂԱՄԲ

Կաղամբը բանջարանոցի անհրաժեշտ բույսերից մեկն է։ Շիթիլ ստանալու համար սերմերը պետք է ցանել ջերմոցներում։

Կաղամբը սիրում է խոնավություն, իսկ յեթե հողը շատ խոնավ է, պետք է ցանել բարձր մարգերում։

Շիթիլները պետք է տնկել իրարից կես արշին հեռավորության վրա։ Տնկելու համար պետք է փոքրիկ թիակով հողը քանդել և շիթիլը մինչև առաջին տերևները զգուշությամբ իջեցնել պատրաստած փոսի մեջ։ Հողը պետք է ծածկել այնպես, վոր սեղմված լինի, արմատ-



Մարգը ծածկված է խսիրով



Ջերմոց



Կարտոֆիլի բուկն են տալիս

ների մոտ դատարկ տարածություն չմնա։ Տնկելուց հետո հարկավոր է շիթիլները ջրել։

Յեթե բույսը կբարձրանա 14—17 սանտիմետր, պետք է առաջին բուկը տալ, իսկ յերեք շաբաթից հետո՝ յերկրորդ բուկը։

Բուկը տալ նշանակում է բույսը ծածկել հողով և թողնել միայն մի քանի ճյուղ իր տերևներով։ Բուկ տալու շնորհիվ բույսը կայուն է լինում և արմատները ավելի լավ են տարածվում։

## ԿԱՐՏՈՖԻԼ

Կարտոֆիլը թաղում են, յերբ հողը սկսում քիչ տաքանալ։ Ընդհանրապես կարտոֆիլի մշակության համար մեծ տեղ են տալիս բանջարանոցում։ Տնկելու համար լավ է ջոկել առողջ, հասած կարտոֆիլներ։ Յեթե նրանք մեծ են, կարելի յե բաժանել 2—3 մասի։ Այդ դեպքում պետք է ամեն մի կտորի վրա լինի առնվազն յերկու աչք։ Կարտոֆիլ տնկելու համար բաց արած փոսերը պետք է ունենան 3 վերշոկ խորություն, իսկ նրանց հեռավորությունն իրարից պետք է լինի $^{3}/_{4}$ արշին։



Այսպես պետք է դնել ծիլի



Կարտոֆիլը բուկ տված

Հետագա խնամքը կայանում է բուկը տալու, ջրելու մեջ։ Առաջին անգամ բուկ են տալիս, յերբ դուրս են գալիս տերևները և առաջին ճյուղերը։ Յեթե ցողունը հասնում է 17 սանտիմետր բարձրության, պետք է յերկրորդ բուկը տալ։ Յերկու շաբաթ հետո տալիս են յերրորդ և վերջին բուկը։

## ԳԱԶԱՐ

Այս արմատապտուղը կարելի յե ստանալ զանազան հողերում։ Գազարը ցրտից չի վախենում, դրա համար կարելի յե ցանել վաղ գարնանը։ Գլխավոր խնամքը կայանում է նրանում, վոր պետք է վնասակար խոտերը, մանավանդ սկզբնական շրջանում, շուտ—շուտ պոկել, հակառակ դեպքում մատաղ բույսը կարող է խեղդվել։

## ԼՈԲԻ, ՍԻՍԵՌ

Նախ քան ցանելը, պետք է սերմերը յերկու որ շարունակ ջրում թողնել։ Յերբ ցողունը մի քիչ կբարձրանա, պետք է կողքին փայտ անկել, վորպեսզի նրա վրա փաթաթվի։ Ջրելը, քաղհանը, բուկ տալը և ամբողջ խնամքը նույնն է, ինչ վոր մյուս բույսերինը։

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍ

Ա. ԱՐԱՐԱՏՅԱՆ

# ՄԵՐ ՅԵՐԿՐԻ ՎԱՂ ԳԱՐՆԱՆ ԾԱՂԿՈՂ ԲՈՒՅՍԵՐԸ

*Փետրվարի վերջերից արդեն մեզ մոտ յերեվում են գարնան առաջին նշանները։ Յերկար հանգստանալուց հետո բնությունը կարծես ուզում է վարագույրի հետեվից մի աչքով դուրս նայել իմանալու՝ արդյոք արթնանալու ժամանակ եթ է, վոչ։ Ահա այդ ժամանակ է, վոր դաշտերում ու այգիներում, քամիներից պաշտպանված ձորակներում և բլուրների հարավային լանջերին պատահում ենք բնության աչիկներին՝ ծաղիկների ավանդարդ ձնծաղիկներին։*

## ԽԼՈՊՈՒՋ

*Ուրիշ տեղերում այդ ծաղկին անվանում են խլոպուզ և լավ են անում, վորովհետև իսկական ձնծաղիկը բոլորովին ուրիշ բույս է։ Իսկական ձնծաղիկի գիտական անունն է* galanthus *(գալանթուս), իսկ մեր ձնծածիկ կոչված խլոպուզի գիտական անունն է* Merbndera *(մերենդերա)։*

*Մեզ մոտ, Յերևանի շրջակայքում, շատ տարածված են Կովկասյան խլոպուզի* (merendera caucasùca) *տեսակը։*



Խլոպուզ

*Խլոպուզի ծաղիկն ունի վեց թերթիկներից բաղկացած սպիտակ կամ վարդագույն պսակ։ Պսակի թերթիկները իրար կպած չեն։ Յուրաքանչյուր թերթիկ կազմված է ներքեվի նեղ և յերկար և վերևվի նշտարաձև մասերից։ Վերին մասի հիմքում կան 12 ատամնացցվածքներ, վորոնցով թերթիկները իրար են կառչում ծաղկման սկզբում և խողովակ կազմում։ Սերմնարանը գտնվում է ծաղկի խորքում, բավական ցածր և յերեք բուն ունի։ Նրանից բարձրանում են յերեք իրարից անկախ սռնակ՝ յիրենց առանձին սպիներով։ Ունի վեց առէջք՝ երկար թելիկներով։ Թե առէջքները և թե թերթիկները բաժակակալի վրա սերմնարանից ցածր են ամրացրած. ուրիշ խոսքով՝ խլոպուզի ծաղիկն ունի վերին սերմնարան։ Խլոպուզն ունի 2-4 տերեվ։*

## ԻՆՉՊԵՍ Է ՍՆՎՈՒՄ ՅԵՎ ԾԱՂԿՈՒՄ ԽԼՈՊՈՒՋԸ

*Այս բույսին նայելիս մեր մեջ բնականորեն մի հարց է առաջ գալիս, թե ինչպես է կարողանում նա սնունդ ճարել և ծաղկել այն ժամանակ, յերբ դեռ ցուրտ ու ցուրտ են և շատ դաշտերում ձյունը իսկի չի էլ հալվել։ Բուսաբանական բրիչի կամ մի այլ միջոցով մի բույս հանենք արմատով և մոտիկից դիտենք նաև նրա ստորերկրյա մասերը։*

*Խլոպուզի ցողունը ներքևի մասում ուռած է սոխի կոճղեսի նման։ Արմատները փնջաձև են։ Ցողունի ուռած մասը պատած է գորշ գույնի կըճեպներով։ Սրանք պաշտպանում են բույսի բոլորը անբարեհաջող պայմաններից՝ ցրտից, չորությունից, միջատներից։ Քննելով այդ գորշ կճեպները՝ տեսնում ենք, վոր ցողունը սկսում է անմիջապես արմատից, իսկ ուռած մասը վոչ թե սոխի նման կոճղես է, այլ ցողունի ներքին մասին կպած մի պալար է։ Ամբողջ բույսը դիտելիս մեզ թվում է, թե բույսի ցողունը պալարի վերեվից է դուրս գալիս, մինչդեռ մանրամասնությունը պարզում է, վոր ցողունը անցնում է պալարից անկախ՝ նրա ակոսով միայն։*

*Այժմ պարզ է, թե ինչի շնորհիվ է կարողանում խլոպուզը վաղ ծաղկել։ Նա իր կոճղեսանման պալարի մեջ նախորոք ամբարած պաշար ունի, գարնանը՝ առաջին տաքի հետ ծաղկի*

բողբոջը ծծելով պաշարի հյութը՝ արագ աճում է և հողի յերես դուրս գալով ժպտում արևվին ու շոյվում մոտովը հոսող հալվող ձյան շիթերից։

## ՍԱԳԱԽՈՏ

Համարյա խլոպուզի հետ միաժամանակ ծաղկում է *սագախոտը* — գիտական լեզվով gagea (գագեա)։ Սրա ծաղիկն ունի աստղաձև դասավորված վեց պսակաթերթ, վորոնք ներսից փայլուն-դեղին են, իսկ դրսից անփայլ են և մեջտեղն ունեն կանաչ շերտ։



**Սագախոտ**

Առեջքները թվով 6 են և ամրացած են թերթիկներին։ Սերմնարանը վերին է և կրում է մեկ սռնակ։ Ունի սովորաբար 4-5 տերև։ Ծաղիկները լինում են մեկ, կամ մի քանի հատ։

Սագախոտն աճում է ժայռերի արանքներում, բլուրների լանջերին. պատահում է նաև այգիներում։ Բարձրությունն է մինչև 7-10 սանտիմետր։

Ունի սոխի նման իսկական կոճղեզ, վորի շնորհիվ էլ կարողանում է շուտ ծաղկել։ Բազմանում է վոչ միայն սերմերով, այլ և սխտորի նման կոճղեզներով։ Մարտի վերջերին նրա կոճղեզը բավական նիհարում է, բայց դրա փոխարեն հին կոճղեզի շուրջը առաջանում են մի շարք մանր կոճղեզներ։



**Ձնծաղիկ**

## ՊԱՊԿԼՈՐ

Դեռ չփորած արտերում կամ աղբյուրների ու առուների ափերին վոչ շատ պինդ հողերում կարելի յե գտնել պապկլոր կոչվող բույսը, գիտական լեզվով muscari (մուսկարի)։ Ծաղիկները կապույտ կամ մուգ մանուշակագույն են, համարյա գնդաձև, մի քանի միլիմետր մեծությամբ։ Նրանք գլխավոր ծաղկակոթի վրա կազմում են ծաղկափթթություն — վողկույզ։ Յուրաքանչյուր ծաղկի տակ կա յերկու աննշան սպիտակ ծաղկետերևիկ։ Պսակը կազմված է իրար անբաժան միացած վեց թերթիկներից։ Ծաղկի բերանը սպիտակ կամ մանուշակագագույն է և կճուճի շուրթերի նման դեպի դուրս է դարձած. ունի 6 ատամնաձև կտրվացք։ Ներսում յերևում են թերթիկների մեջտեղն ամրացած 6 առեջքներ և մեկ վարսանդ։ Սովորաբար վողկույզի վերի մի քանի ծաղիկներն անպտուղ են, այսինքն՝ սերմ չեն տալիս։ Ունի 4-5 հատ ակոսավոր նեղ և յերկար տերևներ, վորոնք կոճղեզից են սկսում։ Բազմանում է թե սերմերով և թե սխտորի նման կոճղեզներով։ Խլոպուզը, սագախոտը և պապկլորը միաշաքիլ բույսեր են և պատկանում են շուշանազգիների ընտանիքին։ Շուշանազգիների ընտանիքին պատկանող բույսերն ունեն հետևյալ ընդհանուր հատկությունները։ Տերևների ջղերը զուգահեռ են. արմատը փնջաձև։ Բույսը հաճախ ունենում է կոճղեզ, պալար կամ կոճղարմատ (վոչ միշտ)։ Ավելի հեշտ է նրանց ճանաչել ծաղկի կազմությամբ։ Ծաղիկը պատած



Երևանի պատկորների քաղաքային խորհրդակցության նախագահությունը

և մի կամ յերկու շերտ կազմող 6 թերթիկով, վորոնք թե բաժակ են, և թե պսակ։ Ունեն 6 առէջք։ Վարսանդի սերմնարանը յերեք բուն ունի։ Սերմնարանը միշտ թերթիկների և առէջքների ամրացման տեղից բարձր է։



Պապկլոր

Շուշանազգիներին են պատկանում նաև սոխը, պրասը, սխտորը, ծնեփեկը, շուշանը, բոժոժիկը։

Մենք թվեցինք վաղ գարնանը ծաղկող միայն յերեք բույս։ Բայց նրանք շատ շատ են։ Բացի այդ՝ այս հոդվածի մեջ նույնիսկ այդ յերեք բույսերի վերաբերմամբ բոլոր հարցերը չեն շոշափված,

## ԻՆՔՆԵՐՍ ԵԼ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵՆՔ

Ի՞նչ են անում այդ բույսերն ամառը։ Ինչպես են փոշոտվում։ Ի՞նչ կապ կա նրանց և միջատների մեջ։ Ի՞նչպես են տարածվում նրանց սերմերը։ Ի՞նչպես են պաշտպանվում ցրտերից, անձրևներից, կամ ձյունից։ Յեվ սրանց նման շատ հարցեր։ Բնությամբ հետաքրքրվող պատանի բնասերը այդ հարցերի պատասխանը վոչ թե այս հոդվածում, կամ գրքերում պիտի փնտրի, այլ մեծ բնության մեջ, ուր ամեն անկյունում հետախուզող մաքի համար շատ ու շատ տարիների առատ նյութ կա։

# ՄԵՐ



Գիրք ենք կազմում

## ՄԵՐ ԱՐՀԵՍՏԱՆՈՑՆԵՐԸ

Յերևանի պիոներատան կից կազմկերպված են հետևյալ արհեստանոցները — կազմատուն, հյուսնոց և թիթեղանոց։

Արհեստանոցների նպատակն է զարկ տալ պիոներների աշխատանքային դաստիարակության գործին։ Վարպետը շատ լավ է վերաբերվում դեպի սովորող պիոներները։ Նա ցուցմունքներ է տալիս այս կամ այն աշխատանքը կատարելու համար։ Այդ շատ լավ է։ Այդպիսով զարգանում է պիոներների ինքնագործունեությունը։ Արհեստանոցներում յերկու հերթի յեն աշխատում։

Հարկավոր է ավելի մեծ ուշադրություն դարձնել արհեստանոցների վրա, իսկ ամենից առաջ նրանց շոշափելի օգնություն ցույց տալ։

Պատկեր՝ ՑԵՐԻՆՏ

## ՄԵՐ ԶԲՈՍԱՆՔԸ

Վերջերս Մեղրու 3 կոլեկտիվներով գնացինք զբոսանքի Յերասխի ափը։ Մեզ հետ եյին նաև մեր ուսուցիչները։ Զբոսանքի ընթացքում մենք շարժվում եյինք հետախուզական նշանների օգնությամբ։ Ապա դրանից հետո գնացինք Մեղրու պոստը դիտելու, վորտեղ մենք ծանոթացանք կարմիր բանակայինների հետ և տեսանք նրանց Լենինյան անկյունը։

Դրանից հետո մի փոքր շրջագայելով Յերասխի ափին՝ վերադարձանք։

Պատկերներ՝ Հ. ԴԱՎԹՅԱՆ յեվ Ա. ԱՂԱՎԵԼՅԱՆ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՊՈԼԻԳՈՆՈՒՄ

Պոլիգոնի միջնակարգ դպրոցի առաջ կա մի հսկայական տարածություն՝ հատկացված գյուղատնտեսական աշխատանքների համար։ Անցյալ տարի այդ հողամասից առաջին բերք է ստացվել։ Այս տարի հողամասը ավելի ընդարձակվել է։ Գարնան արևոտ օրերի շնորհիվ սկսվել են աշխատանքները. աշակերտությունը (մանկատների սաները) այդտեղ վարժվում ու ձեռք են բերում գյուղատնտեսական գիտելիքներ։

Պատկեր՝ Խ. Դ.

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԿՈՄՈՒՆԱՆԵՐՈՒՄ

Մեր մի քանի գավառներում կազմակերպված են մանկական կոմունաներ։ Այդ կոմունաներում յուրաքանչյուր աշխատանք տարվում է միահամուռ ուժերով, կոմունայի սաների համագործակցությամբ։ Սակայն մինչև հիմա թե քաղաքի և թե



Պիոներները բուրայի յեվ դազգյահի առաջ

# ԿՅԱՆՔԸ

գյուղի պիոներական կոլեկտիվները կապ չեն հաստատել մանկական կոմունաների կամ գաղութների հետ։ Պիոներական կոլեկտիվը խոշոր անելիքներ ունի այդ ասպարեզում։ Գյուղի պիոներական կոլեկտիվները կապ հաստատելով կոմունաների հետ, պետք է հաճախակի կազմակերպեն կոմունայի սաների զրույցներ, մերձեցման յերեկոներ, հավաքույթներ և շաբաթորյակներ։

Մեր կոմունաները ունեն իրենց վարելահողը, բանջարանոցը, վորտեղ կոմունայի սաները աշխատում են։ Գյուղի պիոներական կոլեկտիվը պետք է ուսումնասիրի կոմունայի բանջարանոցը, նրանց գյուղատնտեսական յեռուն աշխատանքը և ինքն էլ անմիջականորեն մասնակցի այդ աշխատանքներին. բացի դրանից՝ նաև ուսումնասիրի կոմունայի արհեստանոցները։

Այդ գործնական աշխատանքների միջոցով գյուղի պիոներները կ՚կապվեն մանկական գաղութների յեվ կոմունաների հետ։

Պատկեր՝ ՆԱԳՈՒՇ



Պիոներները հյուսնոցում աշխատում են

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՅԵՐԳԵՐԻ ՄԱՍԻՆ

Վերջերս պիոներները յերգում են յերգեր, վորոնք նման են Ռուսական «частушка»-ներին։ Այդ յերգերը հենց իրենք պիոներներն են պատրաստել։

Ինարկե՝ այդ շատ լավ բան է։ Բայց մի հանգամանքի վրա պիտի ուշադրություն դարձնել։ Այդ այն է, վոր նախքան մի յերգ յերգելը, պետք է նրանք քննության յենթարկվեն։

Այդ յերգերից շատերը չունեն գեղեցկություն, ռիթմ, վերջավորությունը իրար չեն նմանվում։

Օրինակ՝

Մեր յոլդաշ, ընկեր Զալթիկը,
խոսակցության է բռնվել
առանց Մանուկին լսելու
ըստ եյության նա խոսեց։

Այս տողերի մեջ չկա վոչ մի գեղեցկություն, բացի քերականական, լեզվական և վոճական սխալներից։

Այսպիսի յերգեր մեզ հարկավոր չեն։ Ուշադրություն պիոներական յերգերի վրա։

Պատկեր՝ Ս. ԲԶՆՈՒՆԻ

## ԵՔՍԿՈՒՐՍԻԱ

Ղալաչա գյուղի I-ին աստիճանի դպրոցի 3-րդ և 4-րդ խմբակները ուսուցչության և պիոներական կոլեկտիվի հետ միասին կազմակերպեցին եքսկուրսիա դեպի Կողբ գյուղը և Այրում կայարանը։ Եքսկուրսիայի նպատակն եր իմանալ, թե մեր գյուղից մինչև Կողբ և Այրում քանի՞ վերստ է։

Գյուղերի մեջ յեղած տարածունը չափելուց հետո վերադարձանք մեր գյուղ։

Պատկեր՝ Ա. ՄԱՂԴՈՅԱՆ

## ՍԱՐ ԳՆԱԼՈՒ ԺԱՄԱՆԱԿԸ ՄՈՏԵՆՈՒՄ Է

Շատ պիոներներ, յերբ մոտենում է սար գնալու ժամանակը, աչքաթող են անում պիոներական աշխատանքները։ Կարծես թե սարերում, յայլաղներում հնարավոր չի պիոներական աշխատանք տանել։

Յայլաղներում պիոներները չպետք է մոռանան անկազմակերպ պատանիների մեջ աշխատելը։ Նրանց հետ միշտ պետք է զրույցներ ունենան պիոներական կազմակերպության նպատակների և պատանիներին հետաքրքրող խնդիրների մասին։ Այդպիսով յայլաղներում նույնպես պատանիներին կկարողանանք մեր կազմակերպության ազդեցության տակ առնել։

Պատկեր՝ Ս. Հակոբյան

Պ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

## ԼԱԳԵՐԻ ՆՊԱՏԱԿՆԵՐԸ



Պիոներներ, մոտենում է ամառը, ինչ պետք է անենք մենք։

Ամենից առաջ պետք է մտածենք թե ինչպես անենք, վոր չհիվանդանանք, չտկարանանք, այլ առողջ լինենք։ Դրա համար հարկավոր է, վոր պիոներները օգտվեն մաքուր օդից, ջրից և արևից։ Այդ բոլորը կարող ենք գտնել քաղաքներում, մանավանդ Յերևանում ու Լենինականում։ Ձեզանից յուրաքանչյուրը կասի՝ ի հարկե վոչ։ Ո՞վ չգիտե և չի տեսել, օրինակ ամառվա ընթացքում Յերևանի սարսափելի փոշին, վորը իր մեջ բազմատեսակ բացիլներ է պարունակում, կամ չի շնչել նրա ծանր, ապականված օդը։

— «Լավ. համաձայն ենք. քաղաքում մնալով չենք կարող առողջ լինել, այլ ընդհակառակը՝ կտկարանանք։ Բայց ինչպես վարվենք, ինչ անենք», — կհարցնեք դուք։ Այս անգամ յես ցույց կտամ միայն ամենակարևոր և ամենաանհրաժեշտ մի միջոց։ Դուք վորպեսզի առողջ և առույգ մնաք, պետք է դուրս գաք քաղաքի ճնշող պատերից՝ դեպի մաքուր օդ, ջուր և արև — դեպի պիոներական լագեր։ Այնտեղ ազատ կարող եք խաղալ, յերգել, թռչկոտել ու աշխատել։ Անկասկած Ձեր առաջին խնդիրը պետք է լինի առողջանալ յեվ առողջանալ, ամրացնել, դիմացկուն դարձնել ձեր մարմինը, վորպեսզի նա հեշտությամբ կարողանա պայքարել ամեն մի հիվանդության դեմ։ Բացի այդ՝ ի հարկե հարկավոր է բանակատեղում հատուկ ուշադրություն դարձնել նայեվ հասարակական օգտավետ աշխատանքների ամենացման խնդրի վրա։

Լագերային կյանքը կվարժեցնի ձեզ կոլլեկտիվ կյանքի և աշխատանքի և ավելի կուժեղացնի ձեր մեջ կարգապահության վոգին։ Այնուհետև դուք հնարավորություն կունենաք ավելի մոտիկից ծանոթանալ բնությանը, ուսումնասիրել նրա այս կամ այն յերևույթը։

## ԼԱԳԵՐԻ ԾՐԱԳԻՐԸ

Մենք լագերի հիմնական խնդիրները ճանաչեցինք, բայց բավականանալ միայն դրանով չի կարելի։ Հարկավոր է կազմել ծրագիր։ Ո՞վ պիտի կազմի այդ ծրագիրը. պարզ է, վոր կոմպլեքսների՝ ղեկավորների հետ միասին, ուրիշ խոսքով՝ կոլլեկտիվի խորհուրդը։ Պիոներները էլ պետք է ակտիվ մասնակցեն այդ ծրագրի մշակմանը, պետք է հայտնեն իրենց կարծիքը։ Մի խոսքով բոլոր պիոներները պատասխանատու պիտի զգան իրենց այդ գործում։ Ծրագիրը կազմելիս չմոռանանք հաշվի

# ԼԱԳԵՐՈՒՄ

առնել անցյալ տարվա լագերի փորձը։ Ցանկալի յե օգտվել նաև Խորհրդային Միության մյուս կազմակերպությունների փորձից։ Այդ կարելի յե անել գրականության, հանդեսների միջոցով։ Պետք ե հիշեցնել, վոր ծրագիր կազմելիս չպետք ե տարվել յերևակայություններով, այլ յելնել մեր ուժերից ու հնարավորություններից։

Ծրագրի մեջ պիտի մտցնել հետևյալ հիմնական կետերը. 1) Նախապատրաստական աշխատանք, 2) լագերը և նրա կահավորումը, 3) ինչ պետք ե անել լագերում։

Աշխատենք կարճ կերպով, առանձին-առանձին պարզաբանել այդ մասերը։

## ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ

Յերևի դուք կմտածեք.— լագերային կյանքը, ինչպես այստեղ գրած ե, շատ լավ բան ե յերևում. բայց մենք յերբեք չենք գնացել և չգիտենք ինչպես կահավորել լագերի տեղը, ինչ անել այնտեղ։ Բացի դրանից կոլլեկտիվը նյութական միջոցներ չունի և մեր ծնողներն ել կարող են չթողնել մեզ։

Դրա համար հարկավոր ե նախորոք դիմել ԼԿՅԵՄ և կուս. բջիջներին. նրանք անպայման կոգնեն գտնել միջոցներ։ Հետո դուք տանը ծնողներին պետք ե բացատրեք, համոզեք, վորպեսզի նրանք դեմ չլինեն ձեր լագեր գնալուն, վոր նրանք ել իրենց հերթին նյութական օգնություն ցույց տան։ Յերբ արդեն այդ ամենը կանեք, պետք ե սկսել աստիճանաբար ծանոթանալ, թե ինչպես պետք ե զանազան պատահարների ժամանակ առաջին օգնություն հասցնել, ինչպես վրան խփել և այլն։

Այդ բոլորին հարկավոր ե նախապատրաստվել փորձնական եկսկուրսիաների միջոցով։ Մի բան ել չպետք ե մոռանալ, վոր նախքան լագեր գնալը անհրաժեշտ ե նախորոք վորոշել, թե ինչ պիտի վերցնի իր հետ յուրաքանչյուր պիոներ, օղակ, ամբողջ կոլլեկտիվը։ Բացի այդ՝ պետք ե մի քանի հոգուց բաղկացած մի խումբ ուղարկել, վորպեսզի ուսումնասիրի լագերի բոլոր պայմանները։

## ԼԱԳԵՐԸ ՅԵՎ ՆՐԱ ԿԱՀԱՎՈՐՈՒՄԸ

Ինչպիսի տեղ պիտի ընտրել լագերի համար։ Ամենից առաջ անհրաժեշտ ե, վոր լագերի տեղը գյուղից հեռու չլինի և ապա բնակարանը հարմար և ջրին մոտ լինի։ Յեթե վրանների մեջ ենք ապրելու, այն ժամանակ այնպիսի վրաններ պիտի վերցնենք, վոր անձրևը չանցնի միջից, տեղը խոնավ չլինի և այլն։ Տեղը վորոշելուց հետո՝ հար-



կավոր է անցնել նրա կահավորմանը, վորի համար հարկավոր է.

ա) Վրանները խփել, վորոնք իրար շատ մոտիկ չպետք է լինեն, այլ մոտավորապես 20—30 քայլ հեռավորության վրա, բ) Մի փոքրիկ տեղ պետք է պահեստ պատրաստել՝ մթերքների, գործիքների և զանազան իրերի համար, գ) Լագերի մեջտեղում հարկավոր է ամրացնել մի սյուն (մաչտա), մոտավորապես 10—14 մետր բարձրությամբ, դրոշակը ծայրին անցկացնելու համար, դ) վրաններից քիչ հեռու սարքել մի խոհանոց. ե) լագերից մոտ 150 քայլ հեռավորության կառուցել արտաքնոցը։

## ԻՆՉ ՊԵՏՔ Է ԱՆԵԼ ԼԱԳԵՐՈՒՄ

Վրանները խփեցիք, պահեստը, խոհանոցը ունեցաք, մյուս բոլոր գործերը վերջացրիք։ Ի՞նչ պետք է անենք դրանից հետո։ Հո չե՞ք նստելու թամաշի. իհարկե՝ վո՛չ։ Այն բոլոր խնդիրները, վոր՝ մենք թվեցինք սկզբում, պետք է արդեն սկսեք ձեր առօրյա աշխատանքների ընթացքում իրագործել։ Որինակ. առաջին խնդիրը՝ պիոներների առողջացումը, ինչպես պետք է իրականացնել։ Ահա ինչպես.

1) Վորոշված ժամին արթնանում եք, թեյում, ճաշում և այլն։

2) Մարզանքներ, խաղեր, զբոսանքներ եք կատարում։

3) Լողանում եք գետում, մաքուր ոդ ծծում, արևի վաննաներ ընդունում։

4) Պահում եք ձեզ մաքուր, հետևում բոլոր առողջապահական կանոններին։

Յերկրորդ խնդիրը՝ հանրոգուտ աշխատանքն ինչպես պիտի կատարել։

1) Ողակներով պետք է ոգնեք գյուղացիներին և կարմիր բանակայինների ընտանիքներին՝ իրենց դաշտային աշխատանքների ապարիզում. որինակ՝ խոտ կամ ցորեն հնձելիս, խուրձեր կապելիս, կալ քշելիս, բոստան ջրելիս և այլն։

2) Գյուղում՝ ամառվա ընթացքում, շատ շինարարական աշխատանքներ է կատարվում. ինչպես ոնինակ՝ առուների և կամուրջների վերանորոգումը, փողոցները մաքրելն ու կանոնավորելը և այլն։ Ահա այդ աշխատանքներին ես դուք ձեր ուժերի համեմատ պետքե մասնակցեք, չհոգնեցնելով ձեզ և մեջընդմեջ հանգստանալով ու յերգելով։ Մի խոսքով՝ հարկավոր է ամեն կերպ աշխատել թեթև ու հետաքրքիր ձևերով մասնակցել այդ աշխատանքներին։

3) Գյուղում կամ լագերում կարող եք կազմակերպել յերեկույթներ կամ ցերեկույթներ և հրավիրել գյուղացիներին և անկազմակերպ պատանիներին։ Հարկավոր է նաև թերթեր կարդալ և զրույցներ կազմակերպել նրանց համար։

4) Անհրաժեշտ է նույնպես սերտ կապեր ստեղծել գյուղի պիոներների հետ։ Նրանց ես ժամանակից արեք ձեր խաղերին,

## ԼԱԳԵՐԱՅԻՆ ԿՅԱՆՔԻ ՌԵԺԻՄԸ

| | |
|---|---|
| 1. Արթնանալ . . . . . | ժ. 7-ին |
| 2. Մարզանք, լոգ. . . . | ժ. 7-ից 7-30 ր. |
| 3. Դրոշակի բարձրացում, ներկա-բացակա անել . | ժ. 7-30 ր.—ժ. 8 |
| 4. Թ ե յ . . . . | ժ. 8-ից -8-30 ր. |
| 5. Լագերը կարգի բերելը, մաքրելը և աշխատանքներին պատրաստվելը . . . . | ժ. 8-30 ր.—9 |
| 6. Գործնական աշխատանքներ (դաշտում, այգում, գյուղում) . . | ժ. 9--11 |
| 7. Արևի վաննաներ . . | ժ. 11—11-30 ր. |
| 8. Պարտադիր հանգիստ . | ժ. 11-30 ր.—ժ 12-30 ր. |
| 9. Ազատ ժամանակ . | ժ. 12-30 ր.—ժ. 1-30 ր. |
| 10. Զանազան աշխատանքներ | ժ. 1-30 ր.— 2-30 ր. |
| 11. Ճ ա շ . . . . | ժ. 2-30 ր.—3 |
| 12. Ճաշը հավաքել և ամանները լվանալ | ժ. 3—3-30 ր. |
| 13. Ազատ ժամ . . . | ժ. 3-30—4-30 |
| 14. Աշխ. էկսկուրսիա . . | ժ. 4-30 – 6 ր. |
| 15. Խաղեր, յերգեր և աշխատանք անկազմակերպ. պատանեկության մեջ | ժ. 6—7-30 |
| 16. Թ ե յ . . . . . | ժ. 7-30—8 |
| 17. Զրույց խարույկի շուրջը . . | 8—8-30 ր. |
| 18. Դրոշակի իջեցում, քնելու պատրաստվել . . . . . . | ժ. 8-30—9 |
| 19. Քուն . . . . . | ժ. 9—30 ր |

մարզանքներին, խարույկի շուրջ կատարվող զրույցներին և նրանց հետ յերգեր չափազանց մտերիմ։

5) Դուք պետք է նաև ծանոթանաք գյուղի կյանքին, նրա տնտեսությանը, շրջակայքին և այլն։ Այդ կարող եք անել ողակներով, նրանցից յուրաքանչյուրին անելով առանձին-առանձին առաջադրումներ։

Այնուհետև պետք է ուսումնասիրեք բույսերը, կենդանիները, քարերը։ Դրանցից կարող եք կազմել զանազան կոլեկցիաներ (հավաքածուներ)։

Բացի այդ հիմնական աշխատանքներից, դուք կունենաք նաև ուրիշ անելիքներ, որինակ ճաշ յեփել, թեյ պատրաստել, լվացք անել, հերթապահություն հաստատել և այլն։

Ցանկալի յե, վոր լագեր գնալիս՝ հետներդ վերցնեք փոքրիկ գրադարան և գեղատուփ։ Հարկավոր է ունենալ նույնպես պատի լրագիր, վորի մեջ գրելու յեք ձեր ամբողջ կյանքի և այն գյուղի մասին, վորտեղ դուք կատարում եք հասարակական աշխատանքներ, քաղաքի մասին, վորտեղից դուք յեկել եք և այլն։

Յերբ լագերային կյանքը վերջանա և յերբ վերադառնաք քաղաք, արդեն պետք է սկսեք հաշվի առնել լագերում կատարած ձեր ամբողջ աշխատանքները։

## ԻՆՉ ՊԵՏՔ Է ՎԵՐՑՆԻ ԱՄԵՆ ՄԻ ՊԻՈՆԵՐ ԼԱԳԵՐ ԳՆԱԼԻՍ

1. Սպիտակեղեն։
2. Յերեսսրբիչ։
3. Փոքրիկ բարձ։
4. Սավան։
5. Վերմակ (ադյալ)։
6. Վերնազգեստ։
7. Վերարկու։
8. Վարտամաններ և նասկիներ։
9. Թաշկինակներ։
10. Ջրաման և ափսե։
11. Գդալ, պատառաքաղ և դանակ։
12. Սապոն ձեռքի և լվացքի։
13. Ատամի փոշի և խոզանակ։
14. Սանր (աղջիկներին)։
15. Ասեղ և թել։
16. Մատրաս (մեշոկ)։
17. Ծոցի տետր։
18. Մատիտ։
19. Ճամբորդական պայուսակ։

## ԱՌՈՂՋԱՊԱՀԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ

1. Ամեն առավոտ լվանալ յերեսը, ձեռները, վիզը և մաքրել յեղունգները։
2. Մազերը կարճ կտրել։
3. Ատամները առավոտյան և յերեկոյան մաքրել։
4. Ձեռները լվանալ ամեն առավոտ՝ ուտելուց առաջ։
5. Մատները բերանը չդնել, չկրծել յեղունգները։
6. Ուրիշի բերանից վոչինչ չվերցնել։
7. Հագուստը պահել մաքուր։
8. Հատակին չթքել և չկեղտոտել։
9. Խմիչք չգործածել ու չծխել։
10. Յերեկոյան, անկողին մտնելուց առաջ, վոտները լվանալ։



# ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ

## ՄԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԸ

*Յեղեք պատրաստ:*

*Գերմանիայում վերջերս տոնեցինք պատանի սպարտակի միության հնգամյակը: Այդ առթիվ բեմադրեցինք պիեսա, յերգեցինք և արտասանեցինք:*

*Մեր հավաքույթները լինում են շաբաթական յերկու անգամ:*

*Կազմակերպում ենք զանազան զրույցներ, դասախոսություններ: Իսկ ամռան ամիսներին՝ էքսկուրսիաներ:*

*Մեզ շատ հետաքրքիր է իմանալ ձեր կյանքի ու աշխատանքների մասին: Ինչպես եք աշխատում դպրոցում: Ուսուցիչներն ինչպես են վարվում ձեզ հետ: Ձե՞զ էլ պատ-*



**Ֆաշիստները ձերբակալել են մի քանի պիո-ներների**

*ժում են, թե վոչ: Սիրելի պիոներներ, այստեղ շատ ու շատ հարցեր են մեզ հետաքրքրում: Գրեցեք անպայման մի նամակ: Այս նամակում կպատմենք ձեզ մեր կազմակերպության համագերմանական համագումարի մասին: Յերբ հոկտեմբերի 2-ին մենք հասանք Հալլե, կայարանում մեզ յերգով ու թմբուկներով դիմավորեցին Հալլեյի և Համբուրգից յեկած պիոներները: Յեղավ միտինգ, ուր խոսեցին Ռուսաստանից և ուրիշ յերկրներից յեկած ընկերները: Հազարավոր պիոներները հրճվում էին լսելով նրանց կրակոտ ու հեղափոխական ճառերը:*

*Նրանք պիոներներին նվիրաբերեցին դրոշներ, վորոնցով յերթվում էին պիոներները:*

*Հետևյալ օրը համագումարի բացումին ռուս ընկերները հանձնեցին համագումարին մի դրոշակ: Շատ ու շատ ներկայացուցիչներ խոսեցին: Խոսեցին նաև յերկու գերմանական պիոներներ, վորոնք Ռուսաստանում յեղած ժամանակ պատվավոր պիոների կոչումն էին ստացել: Հետևյալ օրը պիոներներն ընկած մարտիկների գերեզմանների վրա պսակներ դրեցին:*

*Մեզ շրջապատել էր զինված վոստիկանությունը: Իսկ յերեկոյան յերբ պիոներները տուն էին վերադառնում, ֆաշիստները թակել էին մի քանի պիոներների. մեր Համագումարը պաշտպանում էին բանվորական գնդերը: Մենք շատ բան տեսանք, Հալլեում ուր շատ ու շատ պրոլետարների արյունն է հոսել:*

*Չորրորդ օրը համագումարը փակվեց: Ներկայումս մեր առաջ խնդիր է դրված անկազմակերպ պատանիների մեջ աշխատանքն ավելի ուժեղացնել: Համոզված յեղեք, վոր կշարունակենք մեր աշխատանքն ու պայքարը Լենինի և Լիբկնեխտի վոգով:*

**Սպասում ենք պատասխանի.**

**Յեղեք պատրաստ:**

**Դելից (Հալլեյի շրջան)**

**Տեղական խմբակ:**

## ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԴՊՐՈՑՈՒՄ

*Հալլեյում կայացած մեր համագումարից հետո շատ կարևոր դեպքեր պատահեցին: Յերբ մեր 12 պատգամավորները վերադարձան Հալլեյից, դպրոցական վարչությունը տուգանեց նրանց ծնողներին, վորովհետև նրանք «անհարգելի» պատճառով բացակայել էին դպրոցից:*

*Իսկույն ժողով ունեցանք մեր ծնողների հետ միասին և բողոքի բանաձև ընդունեցինք: Մենք դիմեցինք **Մոպրին**, վոր նա դատարանում մեզ մի պաշտպան տա: Դատարանում մեզ պաշտպան նըշանակվեց դոկտոր Հել՛մը (Դրեզդենից):*

*Հալլեյի համագումարից հետո մենք հինգ անգամ էքսկուրսիա յենք կազմակերպել դեպի գյուղերը: Պետք է ասել, վոր քիչ պիոներներ են մասնակցել այդ էքսկուրսիային: Չմասնակցելու գլխավոր պատճառն այն է, վոր պիոներներից շատերը վրանամաններ չունեն:*

*Այդ էքսկուրսիաները շատ լավ արդյունք են տվել: Գյուղերում տարածել ենք «Պատանի Սպարտակ» հանդեսը, «բանվորական լրագրերը» և այլ հրատարակություններ: Բացի դրանից նվիրատվություններ ենք հավաքել «Մոպր»-ի օգտին: Մենք աշխատում ենք ամենուրեք պրոպագանդա մղել գյուղացիների շրջանում:*

*Վերջերս ժողովրդական տանը կայացած հանրաց ժողովում խոսեց կենտրոնական կոմիտեյի կողմից ընկեր Կուրտը: Այդ ժողովը գումարելու համար մենք աշխատանք ենք կատարել: Մեր հավաքույթում վորոշեցինք վոր ամեն մի պիոներ պետք է աշխատի, վորպես-*



**Ո՞վ է մեղավոր**

*զի շատ մարդ մասնակցի այդ ժողովին: Դրա համար գրատախտակի վրա գրեցինք ժողովի մասին: Մեր յերկու ընկերները մի հայտարարություն էլ փակցրին դասարանի*

պատին։ Ուսուցիչը նկատեց և այդ մասին գրավոր հայտնեց մանկավարժական խորհրդին։ Նա հետևյալն էր գրել․ «Երբ դասարան մտա, նկատեցի հայտարարությունը։ Այդքան հանդգնություն չէի սպասում։ Ես խելույն հասկացա, թե ում գործն է։ Ջնջած դրան հարցրեցի դասարանին՝ ով է մեղավորը։ — Ես, ասաց Վալտեր Շնաուզին։ Իսկ երբ հարցրեցի նրան, թե նա գիտի՞, որ այդպիսի հայտարարություններ փակցնելը արգելված է, նա պատասխանեց, այո։

Ամբողջ դպրոցում 500 հայտարարության բաժանեցինք ժողովի մասին։ Ժողովի օրը բոլոր դասարաններում կարդացվեց մանկավարժական խորհրդի հայտարարությունը, որով արգելվում էր աշակերտներին մասնակցել մեր ժողովին։ Այդ հայտարարությունն իր գործը կատարեց 800 աշակերտի փոխարեն մասնակցեցին 150 աշակերտ։ Բայց և այնպես այդ էլ մեզ համար խոշոր նվաճում է հանդիսանում։

Հունվարի 16-ին Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի մահվան տարեդարձին կոմունիստական կուսակցությունը հուշերի յերեկո յեր կազմակերպել և մեզ հրավիրել էր արտասանելու համար։ Նույն օրը մեզ բաժանեցին բանվորներից և ծառայողներից մեզ համար հավաքված հագուստները։

Այս նամակից տեսնում եք, թե ինչքան դժվար է աշխատանքը։ Մեր կազմակերպությունը դեռ ևս շատ բացեր ունի։ Ամենից առաջ պակասում է մեր շարքերից յերկաթյա կարգապահությունը։

Բայց մենք համոզված ենք, որ մեր թշնամիների դեմ մղած մեր հետագա պայքարի ընթացքում ավելի յես կամրապնդվի մեր կազմակերպությունը։

Գրեցեք մեզ։ Ձեր նամակները մեզ ավելի յեն վոգեվորում աշխատելու և կռվելու համար։

Պիոներական բարևներով՝ **Էրվեն Ծեանզե**, **Էրվեն Պեսեր** (քարտուղար), Երնա Կլեռ (նախագահ), Հենրիխ Գրոսսե, Վալ'տեր Ծատաուզե (դպրոցական բջիջի ղեկավար), և Վալ'տեր Շնեյդեր։

քաղաք Պիրնա

## ԼԵՀ ԿՈՄՅԵՐԻՏՈՒՀԻ ԸՆԿԵՐ ԱՆԿԱՅԻ ՆԱՄԱԿԻՑ

Վեց շաբաթ աշխատելուց հետո՝ մեզ հաջողվեց կազմակերպել վեց պիոներական խմբեր։ Խմբերի անդամները բոլորը բանվորների յերեխաներ են, նույնիսկ մի քանիսը նրանցից աշխատում են գործարանում։

Յերեխաները ամեն ինչով հետաքրքրվում են։ Միշտ ամեն մի զրույցից հետո յերկար ու տաք վիճաբանություններ են բացվում։

Զրույցները գաղտնությամբ ենք անցկացնում, վորպեսզի վոստիկանների ճանկը չընկնենք։ Մեր աշխատանքների ընթացքում նաև խոշոր տեղ ենք տալիս խաղերին։

Մեր խմբերը շատ մարտական են։ Հիշում եմ՝ մայիսի մեկի նախօրյակին, նրանք պահանջում եյին, վոր իրենք գընան ցուցարարների առաջին շարքերում։ Նրանք մեզ համոզում եյին, վոր իրենց վրա չեն կրակի և այդպիսով կպաշտպանեն նրանք հասակավոր ընկերներին։

— Իսկ հակառակ դեպքում, յեթե մեզ վրա կրակեցին, ինչ արած, արդեն մենք մեծացել ենք և կարող ենք մեռնել բանվոր դասակարգի հաղթանակի համար. — ասում եյին նրանք, Մեծ դժվարությամբ համոզեցինք նրանց, վոր հարկավոր է դեռ շատ աշխատել բանվոր դասակարգի հաղթանակի համար և վոչ թե մեռնել։

Պետք է ասել, վոր Լեհաստանում պիոներ կոչում են վո՛չ թե պատանեկական կոմունիստական խմբերի բոլոր անդամներին, այլ 14-15 տարեկան պատանիներին։

Պիոներական կազմակերպությունը Վարշավայում կազմակերպվել է անցյալ տարվա ամռանը։

Ներկայումս մոտավորապես 50 պիոներներ կան։

Միշտ պետք է հիշել, վոր մեր պիոներները գաղտնի յեն աշխատում։

Ահա այսպես են աշխատում մեր պիոներները։

Վարշավայի դպրոցներից մեկը․ դասամիջոց է. միջանցքի անկյունում հավաքվել են հինգ տղաներ. ինչ վոր բանի մասին վիճում, շշնջում են։ Կարմրել են նրանց դեմքերը, այրվում են նրանց աչքերը։

Ինչի մասին են այդպես ծածուկ խոսում ու վիճում։

Խոսակցությունը մոտավորապես այս էր։

— Զգիտե՞ս վոր շրջանն է։

— Կարծեմ Պավիալյան է։

— Իսկ ամանն կա՞։

— Այո, կոնսերվի ամանն է։

Անպայման ջրով լավ լուծեցեք, թե չէ շատ դժվար կլինի։

— Զմռսանաք ժամը 12-ին։

Յեզրակացություն։ Պատանի ընկերները գիշերը գնալու եյին թռուցիկներ փակցնելու։

**ԿԵՑՑԵ՛ ՅԵՐԻՏԿՈՄԻՆՏԵՐՆԸ, ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՀՄՈՒՏ ՂԵԿԱՎԱՐԸ**

# ԳԻՏԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

## ԱՄՈՒՆԴՍԵՆԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԴԵՊԻ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԲԵՎԵՌԸ



Շատ գիտնականներ փորձել են հասնել Հյուսիսային բեվեռին, բայց միշտ հանդիպել են անհաջողության: 1922 թվին հայտնի գիտնական Ամունդսենը ինքնաթիռով փորձեց հասնել Հյուսիսային բեվեռը, բայց հանդիպելով անհաջողությունների՝ հետ դարձավ: Այս տարի, մայիսի կեսերին, Ամունդսենը Իտալական ոդանավով կրկին փորձ է անում հասնել Հյուսիսային բեվեռը, հայտնագործելու համար այն անհայտ յերկիրը, վորի գոյությունը հաստատված է գիտական տվյալներով:

Ոդանավն արդեն դուրս է յեկել Համբուրգ, անցել է Փարիզ, Լոնդոն և ներկայումս գտնվում է Լենինգրադում, վորտեղից պետք է թռչի հյուսիսային Նորվեգիա —Շպից-բերգեն:

Ոդանավի յերկարությունն է 106 մետր, բարձրությունը 26 մետր. լայնությունը 19,5 մետր: Նա ունի 3 մեքենա 260 ձիու ուժով և մեկ ժամում անցնում է 115—150 կիլոմետր: Այդ ոդանավը կարող է առանց իջնելու անցնել 5,000 կիլոմետր և օդի մեջ կանգնած մնալ 60 ժամ: Նրանով մեկնում են 16 մարդ:

## ԱՆԳԼԻԱՅԻՑ ՀՆԴԿԱՍՏԱՆ ԱՎՏՈՄՈԲԻԼՈՎ

Վերջերս անգլիացի մի մարզիկ Անգլիայից դեպի Հնդկաստան ճանապարհորդություն կատարել է ավտոմոբիլով: Մեքենան առանց փոխանակելու տեղ է հասել, ճանապարհին մեքենայի առանձին նորոգում չի յեղել: Ամբողջ ճանապարհորդությունը տեվել է 5½ ամիս:

Ավտոմոբիլը նախ անցել է հյուսիսային Անգլիա, այնտեղից նավով Ֆրանսիա, ապա նորից ցամաքով Իտալիա, Հարավային-Սլավոնիա, Բուլղարիա, Տաճկաստան, Փոքր-Ասիա, և Սիրիայի վրայով Իրաք, Պարսկաստան, Բելուջիստան ու այդպիսով հասել է Հնդկաստան:

Ավտոմոբիլի վրա յեղել են 3 ճանապարհորդ և 21 փութ ապրանք: Ճանապարհորդները կրել են մեծ նեղություններ, մանավանդ անապատներից անցնելիս, վորտեղ տաքությունը հասել է 40°-ի և որերով ջուր չի յեղել:

## ՄԱՐԶԱՀՐԱՊԱՐԱԿՆԵՐ ԿՏՈՒՐՆԵՐԻ ՎՐԱ

Ամերիկական մեծ քաղաքներում տները շինված են շատ խիտ և տեղի սղության պատճառով մարզահրապարակների թիվը շատ քիչ է: Ճարտարապետներն այդ ուղղությամբ յերկար ժամանակ հետազոտություններ կատարելով, վորոշել են մարզարաններ կառուցել կտուրներին:

Կատարած փորձերը տվել են փայլուն հետևանքներ: Պատրաստած մարզարանները ունեն թենիսի և ֆուտբոլի դաշտեր, վազքի և թռիչքի հարմարություններ, դուշ և հանգստի սենյակներ:

## ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԱՄԵԾ ՌԱԶՄԱՆԱՎԸ

Անգլիան պատրաստել է մի ռազմանավ, վորը մինչև հիմա ամբողջ աշխարհում յեղածներից ամենամեծն է:

Այդ նավը ունի 3.000.000 փութ ծանրություն, յերկարությունը 120 սաժեն է, լայնությունը մոտ 20 սաժեն է: Այդ հսկա նավը մեկ ժամում գնում է 55 վերստ: Նավի վրա աշխատում են 1.500 նավաստիներ:

„Պիոներ„-ի այս №-ը հրատարակվում է ՀԽՍՀ Լուսժողկոմատի յեվ Տպագրական Տրեստի միջոցներով: Այս առթիվ խմբագրությունը յեվ պիոներական հրատարակչությունը իրենց շնորհակալությունն են հայտնում հիշյալ հիմնարկներին:

«Պիոներ»-ի խմբագրություն, Պիոներական հրատարակչություն

ՌԵԲՈՒՍ № 6



ՌԵԲՈՒՍ № 7





## ՆԿԱՐ—ՀԱՆԵԼՈՒԿ № 3

*Անգլիական միլոնավոր բանվորների գործադուլը մեծ խլրտում առաջացրեց անգլիական պարլամենտում։*

*Բուրժուականների ներկայացուցիչները, այնքան էին խառնվել իրար, որ ոչ ոք չգիտեր թե ինչ է անում։ Նախագահը նույնիսկ իր տեղում չեր գտնվում։ Պիոներնե՛ր, կարո՞ղ եք արդյոք գտնել այս նկարի մեջ պարլամենտի նախագահին։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



**Գ. Մահարու**—«Պուճուր բալ'շեվիկը» կարելի յե յերգել „Кирпички" յերգի յեղանակով։

## ՈՒՂՂԵՑԵՔ, ԱՊԱ ԿԱՐԴԱՑԵՔ

| Երես | սյուն | տող | տպված է | պետք է լինի |
|---|---|---|---|---|
| 2 | 1 | 24 վեր. | ծառերի | ծառերերի |
| 2 | 3 | 3 վեր. | յերեր | յերեր հարյուր |
| 3 | 1 | 1 վեր. | յեղբայս | յեղբայրս |
| 11 | 1 | 5 վեր. | բածր | բարձր |
| 14 | 1 | 3 վեր. | բանջարանացային | բանջարանոցային |


Խմբագիր՝ Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ | Պատասխանատու քարտուղար՝ Հ. ՄԻՐԶԱՅԱՆ

Գրատ. № 453 (բ) Տիրաժ 3000. Պատվ. № 3119. Տպագրական Տրեստի 2-րդ տպարան, Յերևան։




## ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ՅԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք·

Խաղը տեղի է ունենում բաց դաշտում և մասնակցում են 100 պիոներ։ Խաղի համար հարկավոր է կարմիր մեծ գնդակ (ֆուտբոլի մեծությամբ, կարելի է պատրաստել շորից) և մի հատ էլ դարձյալ նույն մեծության սև գնդակ։

Կարմիր գնդակի վրա գրված է՝ «պրոլետարներ բոլոր յերկրների, միացեք» լոզունգը։

**Խաղի դասավորումը**— Խաղացողները կազմում են շրջան. ղեկավարը նրանց վոտների ծայրերին հավասար գծում է գետնին մի շրջան, շրջանի մեջ գրում է՝ «պրոլետարներ բոլոր յերկրների, միացեք» լոզունգը։ Առաջին շրջանը գծելուց հետո, բոլորը հինգ քայլ հետ են գնում և գծվում է յերկրորդ շրջանը։ Նորից տրվում է հրահանգ և դարձյալ հինգ քայլ հետ են գնում և գծվում է յերրորդ շրջանը։

Խաղացողները կանգնում են յերկրորդ շրջանում, վորտեղից և խաղը սկսվում է։ Խաղացողներից յերկուսը սկսում են խաղը. դրանցից մեկը վերցնում է կարմիր գնդակը և տալիս դեպի աջ, իսկ մյուսը՝ սև գնդակը դեպի ձախ։ Յեթե կարմիր գնդակը ձեռքից ձեռք անցնելով շուտ տեղ է հասնում, ղեկավարը տալիս է հրահանգ՝ «Պրոլետարներ բոլոր յերկրների, միացեք», խաղացողները մի քայլ առաջ են գնում, իսկ յեթե սև գնդակն է շուտ տեղ հասնում մի քայլ հետ են գնում։

**Խաղը վերջանում է**, յերբ խաղացողներն առաջ քայլելով հասնում են առաջին շրջանին, կամ հետ գնալով յերրորդ շրջանին։

## ՇԱՐԺՎԻՐ ԱՐԱԳ

Խաղին կարող են մասնակցել մի ողակ, կամ ամբողջ կոլլեկտիվը։

Խաղացողները հանում են իրենց կոշիկները և լցնում արկղի կամ մի տակառի մեջ և խառնում. ղեկավարի տված ազդանշանից հետո բոլորը շտապում են գտնել իրենց կոշիկները և հագնել։ Ով շուտ է հագնում կոշիկը և ներկայանում ղեկավարին, նա է խաղը տանում։

Կոշիկների փոխարեն կարելի է վերցնել գլխարկ, գոտի, բլուզ կամ մի ուրիշ իր։

## ՁԵՌՆԵՐԴ ՀԵՌՈՒ

Այս խաղին մասնակցում են մեկ կամ յերկու կոլլեկտիվ։ Խաղավայրը լայն հրապարակ է։

Խաղացողները բաժանվում են յերկու խմբերի։ Առաջին խումբը համարվում է ԽՍՀՄ-ը, իսկ յերկրորդը կապիտալիստական պետություններն են։ Առաջին խումբը շրջան է կազմում յերեսով դեպի ներս։ Յերկրորդ խումբն առաջինի շուրջը շրջան է կազմում 30—40 քայլ հեռավորության վրա։ Ղեկավարի տված ազդանշանի համաձայն՝ «կապիտալիստական պետությունները» քայլում են առաջ և հասնելով Խ.Ս.Հ.Մ.-ին, ձեռները դնում են նրանց ուսերին։

Տրվում է հրահանգ—«ձեռներդ հեռու ԽՍՀՄ-ից»։ Բոլոր «կապիտալիստական պետությունները» թողնում են ձեռքերը, հետ են դառնում և վազում են իրենց բռնած սկզբնական տեղը։

Նույն վարկյանին ԽՍՀՄ-ի խմբի մեջ գտնվողները վազում են նրանց հետևից և աշխատում են բռնել փախչողներին։ Բռնվողները համարվում են գերիներ և պահվում են «ԽՍՀՄ»-ի շրջանի մեջ։

Յերբ «կապիտալիստական պետություններից» բոլորը կբռնվեն, խաղը վերջանում է։

## ՖԱՇԻՍՏՆԵՐԸ

Խաղի համար պետք է ընտրել մի հարմար տեղ։ Ցանկալի յե անտառ, ձոր, քարքարոտ բլուր, վորը լինելու յե ֆաշիստների թագստավայրը (բույնը)։

Խաղացողներից 1/3 մասը դառնում են ֆաշիստներ և թաքնվում վորոշված տեղում։ Իսկ մնացածները՝ կոմունիստներ, վորոնք շրջապատում են ամբողջ թագստավայրը։

Ղեկավարը տալիս է ազդանշան փողով կամ սուլիչով։ Կոմունիստներն ամեն կողմից շարժվում են առաջ և հետզհետե սեղմում ողակը, աշխատելով միանալ և հարձակվել ֆաշիստների վրա։ Ֆաշիստները իրենց թագստավայրից չպետքե դուրս գան, իսկ կոմունիստները կարող են ցրվել՝ վոր կողմը վոր ցանկանան։ Ֆաշիստները կրում են ֆաշիստական նշան, իսկ կոմունիստները կարմիր վզկապ, վորը կապված է լինում խաղացողների թևերին։ Բռնվածը հանձնում է նշանը և դուրս գալիս խաղից։

Խաղը համարվում է վերջացած, յերբ ֆաշիստներից կեսը բռնված են լինում։

Խաղի սկզբին հարկավոր է կազմակերպել զրույց՝ «Ովքեր են կոմունիստները, և ովքեր ֆաշիստները» նյութի մասին։